

# ԲՅՈՒՐ ԱԶԳԻ ՈՐԴԻՆԵՐԸ...

Նրանք կգան աշխարհի բոլոր ծայրերից, և Ֆինլանդիայի մայրաքաղաք Հելսինկիի Օլիմպիական ստադիոնում կհնչի աշխարհի երիտասարդության հուժկու ձայնը: «Խաղաղություն – բարեկամություն» բառերը կհնչեն այնտեղ բոլոր լեզուներով՝ ռուսերեն ու հայերեն, անգլերեն ու պարսկերեն, հինդի լեզվով և բենգալերեն, չինարեն ու ավստրալական ցեղերի լեզուներով: Պատանիներն ու աղջիկները կխոսեն տարբեր լեզուներով, սակայն իրար լավ կհասկանան, որովհետև նրանք բոլորըն էլ մի ձգտում ունեն, միևնույն երազանքն ու միևնույն իղձը — պահպանել խաղաղությունը ամբողջ աշխարհում:

Առաջին անգամ նրանք հավաքվեցին Չեխոսլովակիայի մայրաքաղաք Պրագայում տասնհինգ տարի առաջ և երդվեցին պայքարել իրենց գալիքի համար, թույլ չտալ, որպեսզի ատոմային պատերազմը կործանի աշխարհի երիտասարդության ապագան: Նրանք ասացին «Ո՛չ» պատերազմին և «Այո՛»՝ ստեղծագործ աշխատանքին, ազգերի բարեկամությանը, խաղաղությանը: Այնուհետև նրանք էլի վեց անգամ հանդիպեցին – Բուդապեշտում, Վարշավայում, Բեռլինում, Բուխարեստում, Մոսկվայում, Վիեննայում:

Ամենից շքեղն ու բազմամարդը Մոսկվայի փեստիվալն էր, որ տեղի ունեցավ 1957 թվականին: Միայն արտասահմանից տասնյակ հազարավոր պատանիներ ու աղջիկներ էին եկել: Փողոցները զարդարվել էին աշխարհի բոլոր ժողովուրդների ազգային դրոշներով: Ձեռք – ձեռքի տըված անցնում էին դեղնամորթները, սպիտակամորթները ու նեգրերը: Նրանք երգում էին բարձր ու սրտառուչ, երգում էին այնպես, ինչպես միայն կարելի է երգել Մոսկվայում, ազատության ու ժողովուրդների եղբայրության օրրանում: Քաղաքի բոլոր հրապարակներում բեմեր էին պատրաստված: Ցեյլոնցիները պարում էին մեղմօրոր ու ճըկուն իրենց պարերը, սուրում էին վրացական պարարվեստի երիտասարդ վարպետները, նազում էին հայ պարուհիները:

Սակայն նրանք միայն պարելու և երգելու համար չէին եկել ու հասել հեռավո՜ր Մոսկվա: Նրանք եկել էին իրենց խոսքն ասելու բոլոր նրանց, ովքեր դավադրություն են պատրաստում աշխարհի երիտասարդության դեմ, պատրաստում են ատոմային պատերազմ:

Մոսկվայում հիմա մի գեղեցիկ փողոց կա, որ կոչվում է Խաղաղության պողոտա: Մինչև երիտասարդության 6-րդ փեստիվալը այդ փողոցը կոչվում էր Առաջին Մեշչանական և միայն փեստի-

ՕԳՈՍՏՈՍ
№ 8 1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

վալից հետո վերանվանվեց Խաղաղության պողոտա: Այդպես ոչվեց, որովհետև փեստիվալի բացումն սկսվեց խաղաղության մեծ երթով, որն անցավ Առաջին Մեշչանական փողոցով: Դա մի զարմանալի ցույց էր, աշխարհի երիտասարդության համախմբվածությունն ու միասնությունն արտահայտող ցույց, որի նմանը մինչև այդ ոչ մի փեստիվալում չէր եղել: Ուս-ուսի տված, հոծ շարքերով անցնում էին երթի մասնակիցներն ու կանչում.

— Մենք պատերազմ չե՛նք ուզում...

— Խաղաղությո՛ւն - բարեկամությո՛ւն...

— Եղբայրությո՛ւն...

Հուզիչ ու ցնցող էր երիտասարդության մանիֆեստացիան Մանեժի հրապարակում, ընդդեմ ատոմային պատերազմի: Հսկայական հրապարակում ասեղ գցելու տեղ չկար: Բոլորը ձեռք-ձեռքի տված բռունցքները վեր էին բարձրացրել և լուռ լսում էին ճապոնական Հիրոսիմա քաղաքից եկած փոքրիկ աղջկան: Նա իր ոտքով չէր եկել, նրան բերել էին, քանի որ նա քայլել չէր կարող: Այդ փոքրիկ աղջիկը անդամալույծ էր և զոհը Հիրոսիմա քաղաքում պայթած ամերիկյան ատոմային ռումբի: Նրա բարակ ձայնը հնչում էր հրապարակի բոլոր բարձրախոսներից և ամենահեռավոր անկյունում կանգնածներն էլ լսում էին նրան. Նրան լսում էր ամբողջ աշխարհը:



«Բարեկամնե՛ր, ընկերնե՛ր, սիրելինե՛ր, մի՛ թողեք, որ գալիք սերունդներն էլ ինձ նման լինեն, մի թողեք, որ նրանք անդամալույծ ծնվեն, երդվեք, որ չե՛ք թողնի ատոմային պատերազմը խեղանդամ դարձնի ձեզ»: Եվ հրապարակում դղրդաց հարյուր հազարավոր պատանիների ու աղջիկների հուժկու ձայնը.

«Երդվու՛մ ենք»:

Անցել են տարիներ, բայց դեռևս չեն հանգստացել նրանք, ովքեր դավ են նյութում երիտասարդության և մանուկ սերնդի դեմ, նրանց ապագայի դեմ: Աշխարհի բոլոր ժողովուրդները, հատկապես երիտասարդները, մտահոգված են դրանով: Քանի դեռ ատոմային պատերազմի վտանգը կախված է մարդկության գլխին, նրանք հանգիստ նստել չեն կարող:

Երիտասարդությունը լավ գիտի, որ քանի կա այդ վտանգը, չի կարող հանգիստ աշխատել, հանգիստ սովորել ու երազել ապագայի, բնության գաղտնիքները բաց անելու և երջանկության մասին:

Պատանիներն ու աղջիկները գիտեն, որ պատերազմի հրձիգներին կասեցնում է միայն խաղաղասեր մարդկանց ուժերի հզորացումը: Ահա թե ինչու այս տարի նույնպես նրանք որոշեցին հավաքվել ու մի անգամ ևս ցուցադրել իրենց համերաշխությունն ու հզորությունը: Եվ ահա Հելսինկիի Օլիմպիական ստադիոնում նորից ծածանվում է միջազգային երիտասարդության երկնագույն դրոշը, խաղաղության ու բարեկամության դրոշը:





# ԱՆԱՎԱՐՏ

ԱՐՈՒՍՅԱԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

*Երբ ուսուցչուհին հայտնեց, որ ազատ շարադրություն են գրելու, դասարանն աշխուժացավ։ «Ես կգրեմ մայրիկիս մասին», «Իսկ ես՝ Վալենտին Կոտիկի քաջագործությունների մասին»։ «Ես էլ՝ Զոյայի...»*

*Կարինեն լուռ էր։ Նրա մտքում այնքա՜ն թեմաներ ծնվեցին։ Որի՞ մասին գրել։ Նա վերցրեց գրիչը և սևագրության թղթի վրա գրեց. «Իմ որսորդ եղբայրը», «Ինչպես բարձրացանք Մայմեխ սարը», «Սահադաշտում», «Մեր ճամբարը»։ Գրեց ու կանգ առավ։*

*Դասից բավական ժամանակ էր անցել, բայց Կարինեն չէր կարողանում ընտրություն կատարել։*

*— Կարինե, ինչու՞ չես սկսում,— հարցրեց ուսուցչուհին։*

*Կարինեն վերցրեց գրիչն ու անշտապ գրեց վերնագիրը՝ «Մեր ճամբարը»։*

*«Գարունն ամենից առաջ մեր բակն է այցելում։ Ճիշտ եմ ասում, առաջին անգամ մեր բակի ծառերն են բողբոջում, մեր բակի թփերն են կանաչում։ Ծառերը վերին ծայրերով իրար են միանում, դառնում մի հսկա հովանոց։ Երևանի կիզիչ արևը չի վախեցնում մեզ։ Նստում ենք ծառերի տակ, լողավազանի շուրջը, խաղում ենք, զրուցում, կարդում...*

*Ամռան ամիսներին մեր բակում պիոներական ճամբար ենք կազմակերպում։ Գիտե՞ք ինչպես ենք զարդարում բակը։ Վիլիկն ու Գագիկը ամրացնում են դրոշը։ Սամվելը, Արտավազդն ու Սուրիկը էլեկտրական լամպեր են անցկացնում ծառերի մեջ։ Անահիտն ու Լաուրան ծաղիկներ են ցանում պարտեզում, գունավոր, փայլուն թղթերից դրոշակներ են կտրում, կախում ծառերից։ Այդ ամիսներին փայլում է մեր բակը։ Երեկոյան ժամերին ավելի է գեղեցկանում այն. վառվում է լողավազանի ջահը, գույնզգույն լույսերով շողշողում են ծառերը։ Լույսի ցոլքերը խաղում են լողավազանում, կարծես ջրի հատակում գունավոր ճրագներ են վառվում։*

*Առավոտյան, լիցքային վարժություններից ու նախաճաշից հետո, տողանի ենք կանգնում. բարձրացնում ենք դրոշը։ Ու այսպես սկսվում է մեր ճամբարի օրը...»*

*Կարինեն գրիչը վայր դրեց։ Գլուխն ափերի մեջ առավ։ Դժվարանում էր շարունակել։ Ո՞ր լավ գործը հիշի, ինչի՞ մասին գրի։ Կարինեի աչքի*

# ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

առաջ էին գալիս երգի ու պարի խմբակը, համերգները...

Փողային նվագախումբը նվագում է, Համբիկն ու Լարիսան պարում են նազանքով: Կարծես հենց հիմա տեսնում է նրանց, ծափահարում...

Իսկ ճուտիկ Նարինեն... Հինգ տարեկան էլ չկա, բայց լավ «Փունջ» է պարում: Նրա քույրը կարո՞ղ է առանց իրեն բակ մտնել: Փեշից ամուր բռնում է: Ի՞նչ անի քույրիկը. հետը բերում է ճամբար: Նարինեի նման ճուտիկների համար պիոներները առանձին խումբ են կազմել: Բակի մի անկյունում ավազ են լցրել, բահ, դույլ և ուրիշ շատ խաղալիքներ են բերել: Աղջիկներից երկուսը ամեն օր հերթապահում են, զբաղեցնում նրանց: Ինչպե՞ս չգրել նրանց մասին: Կարինեն մտածում է ու հանկարծ միտքը փոխում. «Կգրեմ բնասերների մասին, կգրեմ, թե նրանք ինչպես են խնամում բակի ծառերն ու ծաղիկները, թե ինչպես են նոր թփեր տնկում, հավաքածուներ կազմում: Կգրեմ նաև կար ու ձևի, ֆիզկուլտուրայի խմբակների մասին»: Նա հիշեց նաև չար Արտաշին, հիշեց ճամբարի պատի թերթում նրա ծաղրանկարը՝ ծառի կոտրած ճյուղը ձեռքին: Գրե՞ր նրա մասին: Ոչ, իհարկե, ոչ: Արտաշն այս տարի էլ չարություն չի անի: Շատ էլ ընդունակ է, շախմատի մրցումներում երրորդ տեղը գրավեց, լավ շեփորահար է: Որ մի քիչ խելոք լինի ու մեծերին լսի, ծառին, թփին ձեռք չտա, բոլորի սիրելին կդառնա...

Նորից մտքերը խառնվեցին, նորից Կարինեն տատանվեց: Ուսուցչուհին մոտեցավ նրան: Աչքերը սահեցրեց նրա տետրի վրայով:

— Վատ չես սկսել, Կարինե, շարունակիր:

«Եվ այսպես սկսվում է մեր ճամբարի օրը:—Կարինեն կարդաց վերջին նախադասությունը և ոգևորված շարունակեց.— Այդ օրերից մեկի մասին եմ ուզում պատմել:

Առավոտյան վաղ, երբ դեռ արևը նոր էր դուրս գալիս իր թաքստոցից, հավաքվեցինք բակում: Ճամփորդական զգեստ էինք հագել, փոքրիկ ճամպրուկներով ուտելիք, պարան, գնդակ վերցրել, անհամբեր սպասում էինք ավտոմեքենային: Նախորդ օրը ծնողների հետ որոշել էինք ամբողջ ճամբարն էքսկուրսիայի դուրս բերել: Մեծերը գնալու էին Սևան, միջնակների ջոկատը՝ Հրազդան, փոքրերը՝ բուսաբանական այգի: Վերջապես ավտոմեքենաները երևացին: Երեխաների հետ մեքենա նստեցին ծնողներից մի քանիսը: Մեզ ուղեկցում էին հին բոլշևիկ Վարդանյանը և մեր Մանյա մորաքույրը: Երբ ավտոմեքենաները շարժվեցին, ուրախությունից «ուռա՜» բղավեցինք: Փոքրերի մեքենան շուտ բաժանվեց մեզանից: Ուրախ երգով ու ծիծաղով հասանք Հրազդան: Այնտեղ բաժանվեցինք մեր ընկերներից ու շարունակեցինք ճանապարհը: Մեզանից շատերն առաջին անգամ էին տեսնում Սևանը:

— Ծո՜վ, ծո՜վ,— բացականչեց Արտաշը: Նայում էի ու ինձ թվում էր, թե դա երկինքն է: Քիչ անց, ավտոմեքենան սլանում էր հենց Սևանի ափով: Այնքան մանրիկ, այնքան փայլուն ալիքներ ուներ լիճը, կարծես ջրի երեսին անընդհատ լող էին տալիս փոքրիկ ոսկե ձկնիկներ: Երևանի շոգից հետո Սևանի զով օդը շատ դուրեկան էր:

Մեր լողորդները՝ Հրանտն ու Լյովան, անմիջապես հանվեցին: Բայց շտաբի պետը պահեց նրանց.

— Իմացեք, որ սա լողավազան չէ: Ջուրը շատ



սառն է, հարկավոր է զգույշ լինել, սառնությունից մկանները կարող են բռնվել, ու դուք չկարողանաք լող տալ: Սպասեք, միասին կլողանանք:

Շուտով տղաներից շատերը ջրի մեջ էին: Հրան-

տըն ու Լյովան մեզ ցույց տվեցին լողի մի քանի ձևեր՝ «բրաս», «կրոլ», «դելֆին»:

Մենք շրջեցինք թերակղզում: Ընկեր Վարդանյանը պատմեց, որ մի քանի տարի առաջ այդ թերակղզին կղզի է եղել:

— Ինչ լավ կլիներ, որ հիմա էլ ցամաք չլիներ, ու մենք ափից նավակներով գայինք,— ասաց Լյուդմիլան:

— Մի՛ շտապիր, նավակ էլ կնստենք, իշխան ձուկ էլ կուտենք, խաղեր էլ կխաղանք,— պատասխանեց Վիլիկը...

Արևը դեռ մայր չէր մտել, երբ ավտոմեքենան կանգ առավ Լենինի պողոտայի № 91 տան առաջ: Դաշտի անուշաբույր ծաղիկների փնջերով, ծափ ու ծիծաղով մտանք ճամբար: Փոքրերի ջոկատն ու ճուտիկները մեզ ծաղկեփնջերով դիմավորեցին: Մենք էլ մեր ծաղիկները նրանց նվիրեցինք:

Երեկոյան, երբ շնկշնկաց երևանյան հովը ու վառվեցին էլեկտրական լամպերը, նստեցինք ծառերի տակ, պատմեցինք օրվա տպավորությունները:

— Հրազդանում էլ լիճ կա: Այնքա՞ն մեծ է: Նավակ նստեցինք, ման եկանք: Հետո գնացինք էլեկտրակայանը տեսանք: «Ծովինարում» ճաշ կերանք,— բառերը երկարացնելով պատմեց Գագիկը:

— Իսկ մենք այգում այնքա՞ն բույսեր տեսանք, թիթեռներ բռնեցինք,— մեջ ընկավ փոքրիկ Սաթենիկը...»

— Կարինե՛, վերջացրու,— լսվեց ուսուցչուհու ձայնը: Կարինեն գլուխը բարձրացրեց. բոլորը վերջացրել, իրեն էին նայում:

— Դեռ չեմ ավարտել,— դժգոհեց Կարինեն, բազմակետ դրեց ու տետրը հանձնեց ուսուցչուհուն:

Այո, Կարինեն չավարտեց շարադրությունը: Նա շատ բան ուներ ասելու: Ուզում էր պատմել, որ այս տարի որոշել են գնալ գյուղերը, բերքահավաքի ժամանակ օգնել կոլտնտեսականներին, նրանց համար համերգ տալ՝ երգել, պարել, արտասանել: Որոշել են լավ մարզվել, մասնակցել սպորտի գծով քաղաքային բոլոր մրցումներին, միջճամբարային օլիմպիադաներին: Ավելացնելու են խմբակների թիվը: Թատերական խմբակն ու տիկնիկային թատրոնը այս տարի նորություն կլինեն իրենց համար: Տիկնիկներն էլ իրենք կպատրաստեն, շորերն էլ իրենք կկարեն, ի՞նչ կա որ, դժվար բան չէ: Քեռի Պավլոսին էլ կհրավիրեն, կխնդրեն, որ սովորեցնի տիկնիկներին խաղացնել, խոսեցնել...

Այս մասին չգրեց Կարինեն: Բայց նրա «շարադրությունը» շարունակվում է դեռ. այո, շարունակվում է: Բայց որտե՞ղ...

Նրանց բակում:




ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Մութ է ձորի անտառը խիտ,
Մութն են ծերպերն անձրևաթաց,
Ու լուսայգը դարձած ժպիտ՝
Կատարներից իջնում է ցած:
Գնում է նա, թռած գնում,
Անցնում գյուղի թավիշ հանդով,
Ջաթինդաղն է շառագունում
Արևային ադամանդով:
Հայացքով ջինջ ու ոսկերիզ
Ծեգն է կանգնում լեռան ուսին,
Ու երկինքը կուլ է տալիս
Մի ժպտադեմ նորալուսին:
Լուռ նայելով ծով մշուշում
Արևային խարույկներին,
Դեպի ձորն է հոտը քաշում
Քարայծների առույգ ներին:
Բուրումնավետ հովիտն ահա
Վեր է հանում իր գոլորշին,
Ու թափվում է ձորի վրա
Առավոտի ոսկե փոշին:
Լիճն է խաղում ալեծածան
Իջնող լույսի խայտանքի հետ,
Օրորում է մի նեղ կածան
Արտույտների համերգը խենթ:
Բլուրներն են լույսով խնդում,
Ցնդում է լուրթ մուժի գոտին,
Ու ողջույն է տալիս հանդում
Մարդը բացվող առավոտին:




# ԳԵՆԵՐԱԼ ՖՈՆ-ՖՐԻՑԸ ՆԱՄԱԿ ՍՏԱՑԱՎ ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻՑ

ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

— Ու՞ր։
— Բակ։
— Իսկ դասե՞րդ։
— Պատրաստեցի, մայրիկ։
— Ճիշտ չե՛ս ասում։
— Ճիշտ եմ ասում։
— Սուրի՜կ...

Բայց Սուրիկն արդեն բակում գրոհում էր թշնամու վրա։

«Ֆաշիստ» երեխաները նրան գեներալ Ֆոն-Ֆրից էին կոչում, մեռնում էին նրա հրամանով. իսկ մայրիկը շարունակ ասում է՝ «Դասերդ պատրաստիր»։ Կարծես դասեր պատրաստելն ավելի կարևոր է, քան ամբողջ ֆաշիստական զորքերի հրամանատար լինելը։

Բակում հասակակից տղաների մեջ ինքն ու Հայկըն էին ամենաուժեղները։ Երեխաները որոշեցին Հայկին դարձնել սովետական զորքերի գլխավոր հրամանատար, որովհետև Հայկը գերազանցիկ էր։

— Իսկ ես նրանից ուժեղ եմ,— պարծեցավ Սուրիկը։

— Ումի՞ց ես ուժեղ,— ասաց Հայկը։— Դե արի կռվենք։

— Արի՛։

Նրանք կռվեցին։ Հայկը հաղթեց և դարձավ սովետական զորքերի հրամանատար։ Սուրիկը հրաժարվեց խաղին մասնակցելուց. մյուսներն էլ գժտվեցին. ոչ ոք չէր ուզում ֆաշիստ դառնալ։ Հայկը Սուրիկին առաջարկեց իր օգնականի պաշտոնը։ Բայց Սուրիկն ավելի շուտ կդառնար ֆաշիստական գեներալ, քան այդ գերազանցիկ Հայկի օգնականը։ Նա այդպես էլ արեց. դարձավ ֆաշիստական զորքերի գլխավոր հրամանատարը։ Հետո ինքն ու Հայկը ծեծ ու ջարդով թույլերին «ֆաշիստ» դարձրին։ Սուրիկի զինվորները նրան գեներալ Ֆոն-Ֆրից անվանեցին։

Սկսվեց պատերազմը։

— Կրա՛կ,— գոռում էր գեներալ Ֆոն-Ֆրիցը,— կրա՛կ...

Եվ ֆաշիստները փայտե ավտոմատներով զինված, անցան գրոհի...

— Իմ հետևի՜ց,— հրամայում էր Հայկը։— Հանուն հայրենիքի, առա՜ջ...

Հետո սովետական զորքերն անցնում էին հակագրոհի, և Սուրիկն իր ֆրիցների հետ՝ «բախբուխ», թավալ էր տալիս հողերի մեջ...

Շատ հոգն էր, թե մայրիկն ամեն օր լվանում էր գեներալական զգեստները։

* * *

— Ուշ երեկոյան գեներալ Ֆոն-Ֆրիցը հոգնած բարձրանում էր տուն։ Մտավ իր սենյակը, հանեց պատառոտված, ցեխոտ շորերը։ Ատրճանակը գցեց սեղանին, նստեց, որ դասերը պատրաստի։ Մայրիկըն այդ օրը ինչ-որ լավ տրամադրության մեջ էր և չնախատեց նրան։ Գեներալը բաց արեց դասագիրքը, բայց մտքերը դեռ ռազմադաշտում էին. նա վաղվա ճակատամարտի պլաններն էր գծում։ Քունը տանում էր. փակեց գիրքը։ Իսկ վաղը նորից «4»-եր կստանա, և մայրիկը կսկսի իր նախատինքները։ Նա որոշեց քնել, որ չմտածի տհաճ բաների մասին։ Մոտեցավ մահճակալին։ Բարձի վրա մի երկնագույն ծրար տեսավ։ Վերցրեց, շուռ ու մուռ տվեց։ Ծրարի վրա արտասահմանյան նամականիշեր կային։ Նա բաց արեց ծրարն ու կարդաց.

*«Թանկագին անծանոթ բարեկամ, Հունգարիայի Դեբրեցեն քաղաքից ընդունիր իմ սրտագին ողջույնները։ Իմ անունը Ստեփան է։ Ես նույնպես սովորում եմ երրորդ դասարանում։ Ես պիոներ եմ և գերազանցիկ։ Ես շատ եմ ուզում քեզ հետ բարեկամություն հաստատել։ Մայրիկս ասում է, որ եթե բոլոր մարդիկ բարեկամներ լինեն, պատերազմ չի լինի։ Հայրս բարտաշ է։ Ունեմ ինձանից փոքրիկ քույր. նա դեռ դպրոց չի գնում։ Ունեմ նաև տատ, իսկ պապիս ֆաշիստները սպանել են։ Նա հայտնի պարտիզան է եղել. նրա անունը Շանդոր է։ Թանկագին անծանոթ բարեկամ, գրիր քո մասին մանրամասն, գրիր ինչպես ես սովորում։ Ուղարկիր քո լուսանկարը։ Անհամբեր սպասում եմ նամակիդ։*

*Քո անծանոթ բարեկամ՝ Ստեփան*
*15 հոկտեմբերի, 1960 թ.*
*քաղ. Դեբրեցեն»։*

Նամակը կարդալուց հետո Սուրիկը երկար-երկար նայում էր Ստեփանի լուսանկարին։ Հունգարացի տղայի աչքերում ինչ-որ հարազատ մի ժպիտ կար Սուրիկը գնաց մոր սենյակը։

— Իսկ նա իմ հասցեն որտեղի՞ց գիտի մայրիկ։

— Գրել է Երևան, ձեր դպրոցը, խնդրել է երրորդ դասարանում սովորող որևէ տղայի հասցե. ձեր ջոկատավարն էլ քո հասցեն է ուղարկել։

— Իսկ ինչու՞ է իմ հասցեն ուղարկել։

— Որովհետև դու ձեր դասամատյանում տասնչորսերորդն ես։ Ինքն էլ իրենց դասարանում տասնչորսերորդն է։



— Իսկ Հունգարիան շա՞տ հեռու է մեզանից։

— Շա՜տ։

Տղան վերադարձավ իր սենյակը։ Նորից կարդաց հեռավոր անծանոթ պիոների նամակը և փխրեց։ Մտածում էր. «Ուրեմն գերմանացիները Ստեփանի պապին էլ են սպանել»։

Իսկ ինքը ֆաշիստական գեներալ է... Հետո տղան վեր կացավ, նստեց սեղանիկի մոտ և նամակ գրեց իր հունգարացի բարեկամին։ Նա չգրեց այն մասին, որ ինքը ֆաշիստական գեներալ է, և որ բակի տղաներն իրեն Ֆոն-Ֆրից են կանչում։

* * *

Պատերազմը շարունակվում էր։ Գեներալ Ֆոն-Ֆրիցը նորից ղեկավարում էր «ֆաշիստական» զորքը։ Բայց հիմա նա առաջվա նման ոգևորված թավալ չէր տալիս հողերի մեջ։ Աշխատում էր շուտ վերջացնել խաղը և գնալ տուն։ Նա հիմա միշտ հիշում էր հունգարացի բարեկամի սպանված պապին ու տխրում։ Հետո բաց էր անում դասագիրքը։ Չէ՞ որ Ստեփանը գերազանցիկ էր, իսկ ի՞նքը։

Անցան շաբաթներ։ Եվ մի օր Սուրիկն ստացավ երկրորդ նամակը։

*«Թանկագին Սուրիկ, կարդացի քո նամակը և շատ ուրախացա։ Շնորհակալություն լուսանկարների համար։ Դու գրում ես, որ համեղ մրգեր ունեք ու ձեր Սևանա լճում իշխան ձուկ կա։*

*Մեզ մոտ Դեբրեցենում եղանակները մի քիչ անձրևային են։ Մենք էլ համեղ մրգեր ունենք։ Մեզ մոտ էլ լիճ կա, որը կոչվում է Բալատոն. մենք մեր լիճն անվանում ենք Հունգարական ծով։ Մեր մայրաքաղաք Բուդապեշտում միջազգային ճամբար կա, որը կոչվում է «Չիլլեբերց»։*

*Ինչու՞ չես գրում քո գնահատականների մասին։ Ես շատ եմ ուզում գալ Հայաստան, միասին ձուկ կբռնենք ձեր Սևանա լճում և կլողանանք։ Շանդոր պապս հայրիկիս պատմել է, որ հայերը բաց ու բարի մարդիկ են։ Պապս հայտնի ձկնորս է եղել և շատ մեծ ձկներ է բռնել Դանուբ գետում։ Ափսոս, որ գերմանացիները սպանել են նրան։*

*Բարևիր ծնողներիդ և դպրոցական ընկերներիդ։ Անհամբեր սպասում եմ հաջորդ նամակիդ։*

*Քո բարեկամ՝ Ստեփան*
*10 նոյեմբերի, 1960 թ.*
*քաղ. Դեբրեցեն»։*

Տղան նորից ու նորից կարդում էր Ստեփանի նամակն ու մտածում... Ուզում էր Հունգարիա գնալ։ Նա իր ցանկությունը հայտնեց մորը.

— Ես ուզում եմ Հունգարիա գնալ, մայրիկ։

— Եթե գերազանց սովորես, մեծանաս, լավ մարդ դառնաս, քեզ կուղարկեն Հունգարիա,—ասաց մայրը։

Հետո Սուրիկը բաց արեց դասագիրքը։

* * *

Գիշերը քնելուց առաջ տղան նորից մտածում էր Հունգարիա գնալու մասին... Նա շարունակ ծրարի միջից հանում էր Շանդոր պապի լուսանկարն ու նայում։ Նրան բարկացնում էր այն միտքը, որ ֆաշիստները սպանել էին նրան։ Եթե նա հիմա կենդանի լիներ, ինքը կգնար Հունգարիա և պապի ու Ստեփանի հետ ձուկ կորսային...

Վերջապես քունը հաղթեց Սուրիկին։

Երազում տեսավ, իբրև թե ինքը, պապն ու Ստեփանը Դանուբ գետի ափին ձուկ էին որսում։ Դանուբ գետը շատ լայն էր։ Իսկ իրենք շատ մեծ-մեծ ձկներ էին բռնում։ Հետո հանկարծ ֆաշիստական ռմբակոծիչն սկսեց ռումբեր թափել իրենց վրա։ Հետո ռումբերից մեկը ընկավ պապի գլխին ու պայթեց... Իսկ պապն այնքան բարի դեմք ուներ...

* * *

Անցան ամիսներ։ Երեխաներն իրար նամակներ էին գրում։ Իսկ Նոր տարվա տոնին իրարից նվերներ ստացան։ Ինքը Ստեփանին ուղարկեց իր վզկապը, լուսանկարներ և հինգ հատ մեծ, կարմիր նուռ։ Ստեփանից ստացավ՝ վզկապ, հունգարերեն մի գիրք և բուդապեշտյան կոնֆետներ։

Հետո էլի անցան ամիսներ։ Գարուն էր արդեն։ Դպրոցական տարին վերջացավ։

Այդ օրը Սուրիկի տրամադրությունը շատ բարձր էր. առավոտյան իր հեռավոր բարեկամից դարձյալ նամակ էր ստացել։

Կեսօրին մայրը եկավ դպրոցից՝ ձեռքին որդու գնահատականների թերթիկը. տղան փոխադրվել էր չորրորդ դասարան։

Ճաշին էլ եկավ հայրը։ Դպրոցական տարին ավարտելու առթիվ նա Սուրիկին մի երկաթյա ավտոմատ նվիրեց։ Հետո ինքը, մայրիկն ու հայրիկը նստեցին ճաշելու։ Արարատյան կարմիր գինով խմեցին իրենց հեռավոր հունգարացի բարեկամների կենացը...

* * *

Ճաշից հետո Սուրիկը հոր մորթե գլխարկը դրեց գլխին։ Մոր պայուսակից հանեց փոքրիկ հայելին և գնաց իր սենյակը։ Մոտեցավ անկողնուն, ներքնակի քանդված ծայրից մի կտոր բուրդ դուրս քաշեց։ Կեղծ բեղ ու մորուք սարքեց իր համար, կպցրեց երեսին։ Սեղանիկի վրա դարսած երկնագույն ծրարների կապոցի միջից հանեց Շանդոր պապի լուսանկարը։ Նայեց լուսանկարին, հայելու մեջ համեմատեց իրեն նրա հետ։ Հետո ուսին գցեց հոր նվիրած ավտոմատն ու վազեց բակ։



Միջանցքում մայրը տեսավ նրան ու զարմացավ.

— Ու՞ր։

— Բակ։

— Սուրի՜կ...

Բայց Սուրիկն արդեն գործի էր դրել իր երկաթյա ավտոմատը...

* * *

Այդ օրը քնելուց առաջ Սուրիկը նամակ գրեց Ստեփանին։

*«Սիրելի եղբայրս, ստացա նամակդ և շատ ուրախացա։ Մեզ մոտ արդեն շոգ է։ Փոխադրվեցի չորրորդ դասարան։ Երկու հատ «4» ունեմ, բայց խոստանում եմ մյուս տարի անպայման գերազանցիկ լինել։ Մեր բակի Հայկն էլ գերազանցիկ է և սովետական զորքերի գլխավոր հրամանատարը։ Ես այսօր նրան պատմեցի քո մասին։ Հայրիկս ինձ մի երկաթյա ավտոմատ էր նվիրել։*

Այսօրվա ճակատամարտն արդյունավետությամբ վերջացավ: Ես իմ ավտոմատով ջարդեցի «ֆաշիստներից» մեկի թևը: Մայրիկդ ճիշտ է ասում, որ պատերազմը վատ բան է: Այնքան մեղք էր այդ տղան, չնայած, որ «ֆաշիստ» էր. թևից արյուն էր գալիս, իսկ նա լաց չէր լինում, այլ ժպտում էր ինձ: Այնքան լավ տղա է նա: Ես կոտրեցի իմ երկաթյա ավտոմատը: Հետո բոլորն էլ կոտրեցին իրենց ավտոմատները: Մենք՝ բակի երեխաներս, որոշեցինք նոր խաղ հորինել: Առաջարկություն կա թռչել Վեներա: Երանի կենդանի լիներ պապիկդ: Տղաները ուզում էին ինձ դարձնել տիեզերանավի կապիտան, բայց ես հրաժարվեցի, որովհետև Հայկը ավելի շատ բան գիտի տիեզերանավերի մասին: Իսկ ես կլինեմ նրա օգնականը: Սիրելի եղբայր, շատ եմ կարոտել քեզ:

Մի՞թե կգա այն օրը, որ կկարողանանք իրար հանդիպել:

Քո եղբայր՝ Սուրիկ
23 հունիսի, 1961 թ.
քաղ. Երևան»:

## ՇԱՏԱԿԵՐՆԵՐԸ

Շատակերները ագահներ են, և ոչ ոք չի ուզում ընկերություն անել նրանց հետ: Բայց գիտե՞ք, որ բնության մեջ կան շատակերներ, որոնք հսկայական օգուտ են բերում մարդկանց: Դուք բոլորդ ծանոթ եք սևաթև և արագասլաց ծիծեռնակին: Նա շատակեր է, այնքան շատակեր, որ եթե իմանաք նրա կերածի չափը՝ կզարմանաք: Ծիծեռնակը մի ամսվա ընթացքում ուտում է... մեկ միլիոն ճանճ, մոծակ ու պիծակ: Բայց ծիծեռնակը միակ շատակերը չէ: Թագավորուկ կոչվող թռչունը, որն իր մեծությամբ ճռնճղուկի չափ է, մեկ տարվա ընթացքում ուտում է մինչև տաս միլիոն միջատ:

Սարյակներն էլ ուտում են մեծ քանակությամբ վնասատու միջատներ: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հազար սարյակը ճտերի հետ միասին մեկ ամսվա ընթացքում ուտում է քսաներկու տոննա մորեխ:

Բայց միայն վնասատու միջատներին չէ, որ ոչընչացնում են թռչունները: Բուն ամառվա ամիսներին բռնում և ուտում է ավելի քան հազար դաշտային մուկ և այլ վնասակար կրծողներ: Այդպիսով բուն կրծողներից փրկում է մեկ տոննա հացահատիկ:

Հաշվել են, որ եթե մարդը ունենար թռչունի ախորժակ, ապա նա մեկ օրում այնքան սննդամթերք կուտեր, որքան ուտում է մեկ ամսում:

## Գիտե՞ք որ...

...Ճապոնիայում պահում են մի տեսակ ձուկ, որը համարվում է երկրաշարժի բանբեր: Գտնում են, թե երկրաշարժից մի քանի ժամ առաջ այդ ձկնիկները սկսում են ակվարիումի մեջ անհանգիստ այս ու այն կողմ նետվել, զգուշացնելով վերահաս վտանգի մասին:

Օքսֆորդի համալսարանի դասախոս Կերոլը ազատ ժամերին գրել է մի հեքիաթ՝ «Ալիսան հրաշքների երկրում»: Անգլիայի թագուհին մի անգամ կարդացել է հեքիաթը, շատ հավանել և հրամայել է անհապաղ ձեռք բերել Կերոլի մյուս բոլոր ստեղծագործությունները: Բայց որքան մեծ է եղել նրա զարմանքը, երբ պարզվել է, որ Կերոլի բոլոր գրքերը բարձրագույն մաթեմատիկայի վերաբերյալ աշխատություններ են:

... Ծիծեռնակների մոտ շատ զարգացած է փոխօգնության բնազդը: Ցեղակիցները երբեք անօգնական չեն թողնում վիրավորներին:

... Սև ծովում հաշվվում է շուրջ կես միլիոն դելֆին, որոնցից յուրաքանչյուրը օրվա ընթացքում ուտում է մոտ 5 կգ. ձուկ: Այսպիսով, դելֆիններին բաժին է ընկնում 8 անգամ ավելի շատ ձուկ, քան Սև ծովին հարող բոլոր պետությունների միասին վերցրած:

Մարդկանց շատակերությունը վնասում է առողջությանը, իսկ թռչուններինը ոչ միայն չի վնասում իրենց, այլև ոչնչացումից փրկում է աշխարհի բուսական բարիքները:

# Թվաբանական գյուտ

ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

Երեխաներ, ձեզ համար գուցե անսպասելի կլինի, եթե ասեմ, որ ես սիրում եմ մաթեմատիկան, իհարկե, խելքս հասածի սահմաններում։ Ազատ րոպեներին լուծում եմ խնդիրներ և այլն։ Եվ ահա, իմ հերթական ժամանց-զբաղմունքներից մեկի ժամանակ, ես արեցի մի շատ համեստ թվաբանական գյուտ։ Գուցե դա գոյություն ունի,— թեև, համոզված եմ, որ ոչ,— բայց ես դա արեցի միանգամայն ինքնաբերաբար և ինքնուրույն։ Ի՞նչ «գյուտ» է դա։

Ինչպես գիտեք, թվերի բաժանելիության վերաբերյալ կան մի շարք կանոններ։ Օրինակ, 3-ի վրա բաժանվում են այն թվերը, որոնց թվանշանների գումարը բաժանվում է 3-ի վրա, 11-ի վրա բաժանվում են այն թվերը, որոնց թվանշանները, մեկընդմեջ հաշված և գումարած, հավասար են մեկընդմեջ հաշված և գումարած մյուս թվերին և այլն, և այլն։ Այսինքն, ամեն մի բաժանարարի համար կա առանձին կանոն։ Եվ, չնայած դրան, կանոններ կան ոչ բոլոր բաժանարարների համար, այլ միայն մի քանիսի։

Եվ ահա, ես գտա մի կանոն, ըստ որի կարելի է որոշել, բաժանվու՞մ է արդյոք տվյալ թիվը որևէ բաժանարարի վրա։ Այլ կերպ ասած, իմ գտած կանոնը միայն մի կանոն է և ոչ թե մի շարք, և դա վերաբերում է ոչ թե մի շարք բաժանարարների, այլ բոլոր բաժանարարներին, թեկուզ և միլիարդների հասնող։

Ահա այդ կանոնի մասին գրված պատմվածքանման նյութն էլ ուղարկում եմ ձեզ։

*Դավիթը տուն եկավ քիթը կախած։*

*— Հը՞, ի՞նչ է պատահել,— հարցրեց նրա մեծ եղբայր Վահանը։*

*— Թվաբանության ուսուցիչն այնպիսի մի դժվար խնդիր է տվել,— տրտնջաց նա,— որ ժամերով շարունակ նստելու եմ դրա վրա։*

*— Ի՞նչ խնդիր։*

*— Ահա...*

*Փոքր եղբայրը բաց արեց տետրակը։ Այնտեղ գրված էր՝ 4060189։*

*— Հասկանու՞մ ես, Վահան, ես պիտի գտնեմ՝ բաժանվու՞մ է այդ թիվն արդյոք 41-ի, 43-ի, 47-ի և 49-ի վրա։ Սարսափելի չեմ սիրում բաժանման գործողությունը, բայց ի՞նչ արած։ Պիտի ամբողջ օրն զբաղվեմ դրանով. «Քանի՞ անգամ է 41-ը մտնում 406-ի մեջ։ 9 անգամ։ Մնացո՞րդը։ 37։ Ցած բերել զերոն։ Կստացվի 370։ Քանի՞ անգամ է 41-ը մտնում 370-ի մեջ»։ Եվ այլն...*

*— Ես կարող եմ քեզ օգնել,— առաջարկեց Վահանը։*

*— Ինչո՞վ։ Իմ փոխարեն ի՞նքդ ես զբաղվելու այդ ձանձրալի գործով։*

*— Չեմ էլ մտածում։*

*— Էլ ուրեմն ի՞նչպես։*

*— Ես կարող եմ այնպես անել, որ դու բաժանելու փոխարեն, բազմապատկես։*

*— Եթե այդպիսի բան հնարավոր լինե՜ր...— ծոր տվեց փոքր եղբայրը։— Բայց ի՞նչը պիտի բազմապատկեմ ինչով։*




*— Ես քեզ կտամ մի թիվ, մի կախարդական թիվ, որի վրա դու կբազմապատկես բաժանելիի վերջին թվանշանը, արդյունքը կգումարես բաժանելիին, ապա նորից կբազմապատկես վերջին թվանշանը և այդպես շարունակ, մինչև որ...*

— Սպասի՛ր, սպասի՛ր,— ընդհատեց կրտսերը:— Եկ կատարենք գործնականորեն, որ ավելի լավ հասկանամ...

Նա վերցրեց մի թուղթ, վրան գրեց՝ 4060189 և հարցական նայեց եղբորը.

— Ի՞նչ թվի վրա պիտի բազմապատկեմ դրա վերջին թվանշանը, այսինքն՝ 9-ը:

— 37-ի:

— Ո՞րտեղից գիտես:

— Դա իմ գյուտն է և իմ գաղտնիքը,— ժպտաց Վահանը:— Իսկ դու առայժմ փորձիր...

Կրտսեր եղբայրը 9-ը բազմապատկեց 37-ով, ստացավ 333, որն ավելացնելով 406018-ի վրա, ստացավ 406351:

— Իսկ հիմա՞:

— Կրկնիր նույն գործողությունը, նորից 37-ով բազմապատկիր վերջին թվանշանը և ավելացրու թվի վրա:

Բազմապատկելն այս անգամ շատ հեշտ էր, որովհետև վերջին թվանշանը 1 էր: Դա նշանակում էր, որ Գարիկը թվի վրա պարզապես ավելացնելու էր 37: Ավելացնելով դա 40635-ի վրա, ստացավ 40672:

— Իսկ հիմա՞:

— Եվս մի անգամ,— խորհուրդ տվեց Վահանը:

Գարիկը 4067-ի վրա ավելացրեց 2 անգամ 37, այսինքն 74, և ստացավ 4141:

— Ստացվե՜ց, ստացվե՜ց,— բղավեց նա:— Կույրն անգամ կարող է տեսնել, որ այդ թիվը բաժանվում է 41-ի վրա:

— Այդ նշանակում է,— եզրակացրեց Վահանը,— որ ձեր ուսուցչի տված ամբողջ թիվն էլ է բաժանվում 41-ի վրա, առանց մնացորդի:

— Ի՜նչ հրաշալի միջոց, ի՜նչ հեշտ միջոց...— հիացած մրմնջում էր Գարիկը:— Այ, եթե հնարավոր լիներ նույն կերպ վարվել նաև 43-ի հետ...

— Կարելի է:

Գարիկը նույնիսկ վեր ցատկեց տեղից:

— Կարելի՞ է... Էլի երեսունյոթո՞վ: Անհնար, ի՞նչպես կարող է երեսունյոթով: Կստացվի դարձյալ նույնը:

— Ո՛չ, այս անգամ պետք է վերցնել ուրիշ թիվ,— գլխով արեց Վահանը:— Պետք է վերցնել... 13:

— Դու ո՞րտեղից գիտես,— զարմացավ Գարիկը:— Գուցե կատա՞կ ես անում: Ինչպե՞ս կարող է պատահել, որ 41-ի համար վերցվի 37, իսկ ավելի մեծ թվի, 43-ի համար շատ ավելի փոքր թիվ,— 13...

— Փորձի՛ր, փորձի՛ր,— ժպտաց Վահանը:

— Փ...

Գարիկն սկսեց գործողությունը՝ բարձրաձայն մտածելով:

— 406018-ին գումարել 13 անգամ 9, այսինքն 117: Կստացվի 406135: Այժմ 40613-ին գումարած 65, կստացվի 40678: 4067-ին գումարած 104, կստացվի 4171: 417-ին գումարած 13, կստացվի 430: Դու՜րս եկավ, նորի՜ց դուրս եկավ,— ուրախ բղավեց նա:— Տուր հաջորդ թիվը՝ 47-ի համար:

— 33:

— Ախր, ո՞րտեղից գի... Լա՛վ, լա՛վ, չեմ հարցնի: 406018-ին գումարած 33 անգամ 9, այսինքն 297, կստացվի 406315: 40631-ին գումարած 165՝ կլինի 40796: 4079-ին գումարած 198՝ կլինի 4277: 427-ին գումարած 231՝ կլինի 658: 65-ին գումարած 264՝ կլինի 329: 32-ին գումարած 297՝ դարձյալ կստացվի 329: Այս ինչու՞ օղակ ընկավ,— զարմանքով հարցրեց նա եղբորը:

— Որպեսզի ուղեղդ մի քիչ շարժես: Չէ՞ որ 329-ը՝ դա 7 անգամ 47 է: Այդ է՞լ է հարկավոր բացատրել քեզ:

— Իսկապես որ,— շփոթվեց Գարիկը,— դա այնքան հասարակ բան է, որ ամոթ է չիմանալը:

— Ի՞նչ թիվ մնաց քեզ մոտ,— հետաքրքրվեց Վահանը:— 49: Դրա համար ես քեզ կտամ մի շատ փոքր թիվ՝ 5:

Գարիկը կասկածանքով նայեց նրան:

— Դու փորձի՛ր, փորձիր...

Գարիկն սկսեց.

— 406018-ին գումարած 45—406063: 40606-ին գումարած 15—40621: 4062-ին գումարած 5—4067: 406-ին գումարած 35—441: 44-ին գումարած 5—49... Ա՜յ քեզ հրաշալի միջոց: Նորից ստաց-



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

վեց... Եվ ինչպիսի՜ հրաշալի զուգադիպություն:

— Ի՞նչ զուգադիպություն,— չհասկացավ Վահանը:

— Այն, որ մեր ուսուցիչն ինձ խնդիր էր տվել ճիշտ այն թվերի վերաբերյալ, որոնք դու գիտեիր. 41, 43, 47, 49:

— Ես գիտեմ բոլոր թվերի վերաբերյալ...

Գարիկը նորից վեր ցատկեց տեղից.

— Ինչպե՞ս թե՝ բոլոր: Մեզ սովորեցրել են, թե ինչպես գտնել, տվյալ թիվը բաժանվու՞մ է 3-ի, 5-ի, 6-ի, 7-ի, 8-ի, 9-ի, 11-ի և մի քանի ուրիշ թվերի վրա: Իսկ դու գիտես բոլո՞ր թվերի...

— Այո՛: Բոլոր:

— Մինչև հազա՞րը:

— Ավելի,— ժպտաց Վահանը:

— Միլիո՞ն...— ասաց Գարիկը՝ եղբորը նեղը լծելու համար:

— Ի՞նչ է միլիոնը,— փնչացրեց Վահանը:— Ես գիտեմ անսահման քանակությամբ բաժանարարների մասին: Ինչքան ուզում է՝ մեծ լինեն դրանք:

— Չի կարող պատահել,— այս անգամ վճռականորեն ժխտեց Գարիկը:— Չի կարող և վերջ:

— Կարող է և վերջ:

— Կարո՞ղ ես ասել 349-ի մասին:

— Կարող եմ:

— Իսկ...— Գարիկը նայեց առաստաղին,— 827-ի մասի՞ն:

— Կարող եմ,— ծիծաղեց Վահանը:

— Իսկ... 1043-ի մասի՞ն:

— Չէ՞ որ քեզ ասացի՝ բոլոր թվերի մասին էլ ի՞նչ ես թվարկում:

— Դե եկ փորձենք:

Առանց սպասելու եղբորը, Գարիկն ինքը վերցրեց մատիտը և սկսեց.

— Վերցնենք մի այսպիսի սարսափելի մեծ թիվ. 243230729: Դա բաժանվու՞մ է 1043-ի վրա: Ի՞նչ թվի վրա պիտի բազմապատկել այս դեպքում բաժանելիի վերջին թիվը,— դիմեց նա եղբորը:

— 313-ի:

Գարիկն արագ-արագ կատարեց հարկ եղած գործողությունները:

24323072<br>
2817<br>
――――――<br>
24325889<br>
2432588<br>
2817<br>
――――――<br>
2435405<br>
243540<br>
1565<br>
――――――<br>
245105<br>
24510<br>
1565<br>
――――――<br>
26075<br>
2607<br>
1565<br>
――――――<br>
4172<br>
417<br>
626<br>
――――――<br>
1043

Որքան մեծ եղավ Գարիկի զարմանքը և ուրախությունը, երբ այդքան արագ ու հեշտ ստացավ պատասխանը:

Այս անգամ նա անխախտ հարգանքով նայեց մեծ եղբորը:

— Իսկ ի՞նչպես ես միտքդ պահում այդքան թվերը,— հարցրեց նա:— Թե՞ աղյուսակ ունես:

— Ոչ մի աղյուսակ չունեմ: Եվ ոչ էլ միտքս եմ պահում: Դա անհնար է: Չէ՞ որ դրանք ոչ թե մի քանի տասնյակ, այլ միլիոնավոր ու միլիարդավոր թվեր են և դեռ ավելին,— անսահման...

— Ապա ի՞նչպես: Կանոննե՞րն ես միտքդ պահում:

— Այո՛:

— Բայց, ախր, կանոններն էլ շատ են,— հառա-

եց Գարիկը։— Ա՛յ, ես գիտեմ ընդամենը մի տասը բաժանարարների կանոններ, բայց էլի մեկ-մեկ դրանք մտքիցս դուրս են թռչում։

— Իսկ ես այդ անսահման շատ թվերի համար ունեմ միայն մի կանոն,— ասաց Վահանը։

— Չի՞ կարող պատահել,— գլուխը թափ տվեց Գարիկը։— Այս անգամ ես քեզ ոչ մի դեպքում չեմ հավատա։

— Գիտեմ, խորամանկություն ես անում, որ գաղտնիքըն ասեմ,— մատը թափ տվեց Վահանը։— Բայց չեմ ասի։ Փորձիր ինքդ գտնել։

Եվ ժամացույցին նայելով, դուրս եկավ տնից։

— Վահա՛ն,— բղավեց եղբայրը նրա հետևից, բայց ապարդյուն։

Գարիկը թուղթ վերցրեց, նստեց և փորձեց գտնել հրաշալի կանոնը։ Բայց հազիվ թե գտնի։

Գուցե ինքնե՞րդ փորձեք, սիրելի ընթերցողներ, մինչև որ Վահանը վերադառնա տուն։

# ԱՄՌԱՆ ԿԱՆՉԸ

ՎԱՉԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Շփոթվել է արևը...
Շող է ուզում տերևը,
Շող է ուզում խաղողը,
Շող է ուզում և հողը...
Ո՞ր մեկին շող բերի նա,
Որ շուտ լցվի քաղցրանա..
Այստեղ խնձորն է բուրում,
Այնտեղ նուռն է կարմրում,
Թավիշ դեղձն է մոտ կանչում,
Տանձին ճյուղերն է ճոճում,
Ձմերուկն է հա փքվում,
Անուշ սեխն է ճաքճքում,
Ընկույզներն էլ ձանձրացել՝
Շորերը ցած են գցել․․.
Ո՞ր մեկին շող բերի նա,
Որ շուտ լցվի, քաղցրանա...
Իսկ, ա՛յ, խենթուկ այս տղան
Լսեց կանչը շոգ ամռան,
Ձմերուկի մոտ գնաց,
Թափ-թափ արեց ու ասաց.
—Վա՛յ, գնդակ է...խաղ անեմ,
Հետո առնեմ՝ տուն տանեմ...—
Սեխը այնպես ծիծաղեց,
Պոկվեց, առուն գլորվեց.
—Ձմերո՛ւկ է, ձմերո՛ւկ...
Տարեք, կտրեք, կերեք դուք։—
Տղան երկուսն էլ առավ,
Տարավ, կտրեց ու կերավ։
Բայց չկերա՞վ հո մենակ...
Բոլորն եկան իջան բակ.
Կերավ բարի պապիկը,
Անուշ արեց տատիկը,
Կերան՝ ընկեր, դրացի...
Ես է՛լ զուրկ չմնացի։
Իսկ արևն իր գործից գոհ,
Տուն էր գնում երկնքով...

# ԲՆԱՆԿԱՐ

ԳՈՒՐԳԵՆ ՓԻԼԹԱԿՅԱՆ

Խշշում է անուշ բարդին սլացիկ.
Արև է, ամառ մեր այգեստանում,
Իսկ դաշտում ծաղկած ուռենին փոքրիկ,
Ծիտիկներին է մեղմիկ օրորում։
Ճամփի եզերքին առուն է երգում,
Եվ խոխոջալով իջնում դեպի ձոր.
Համերգ են տալիս սոխակն ու կկուն,
Թռչում է թփից սիրունիկ մի լոր։
Արևի շողից սալորի շաղոտ
Պտուղն է ժպտում մանկան աչքի պես,
Իսկ սարի լանջին, հնձած խոտի մոտ,
Նոր բույն է փորում մի սևուկ աղվես։



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

# ԳՎԱՐԴԻԱՅԻ ՄԱՅՈՐԸ

ԱԼԲԵՐՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

«Պիոներ» ամսագրի ապրիլ ամսվա համարում ես կարդացի բելգիացի դպրոցական Արմեն Ոսկանյանի նամակը: Թեև կարճ, բայց մի հուզիչ պատմություն է այն, որի հեղինակը գրում է մեր պայծառ հայրենակից Մկրտիչ Կիլոյանի մասին: Նա իր նամակը այս տողերով է ավարտել. «Երբ գանք Հայաստան, Կիլոյանի հողակույտեն ափ մը հող պիտի բերենք հայրենակիցներու համար...»

Ափ մը հող... այդ հողի ու մարդու երջանկության համար նվիրաբերեց իր կյանքը Մկրտիչ Կիլոյանը, զոհվեց, որ այնտեղ մարդուն սնուցող հողը չայրվի արկերի պայթյունից, որ խինդով անցնի բելգիացի Արմենի ու երևանցի Արմենուհու կյանքը: Իսկ դուք, իմ պատանի բարեկամներ, երևի, ոչ բոլորդ գիտեք Կիլոյանի մասին: Նա ժուռնալիստ-մարտիկ էր, կռվում՝ գվարդիայի մայոր, ուներ տասներկու շքանշան:

* * *

1943 թվականն էր: Գնում էին վճռական մարտեր, սկսվել էր Սովետական Բանակի մեծ հաղթարշավը: Սեպտեմբերի վերջին Կիլոյանը մասնակցեց Հայրենական պատերազմի ամենադժվարին գործողություններից մեկին՝ Դնեպրի անցմանը: Հիտլերականները պայթեցրել էին բոլոր կամուրջները, ոչնչացրել անցման բոլոր միջոցները: Հորդահոս և լայնահուն Դնեպրը արհամարհոտ ռազմիկներին ընդունեց վաղ լուսադեմին: Եղանակը նպաստավոր էր: Մաղում էր բարակ անձրև, ամեն ինչ կորել էր թանձր մշուշի մեջ: Թշնամու համար անսպասելի սկսվեց անցումը: Գետանցի համար օգտագործվում էին հնարավոր բոլոր միջոցները՝ նավակներ, գերաններ, լաստանավեր, տակառներ: Երկու տասնյակ զինվորների հետ մի փոքրիկ լաստանավում էր գտնվում զինվորական թղթակից Կիլոյանը: Եվ հենց նույն օրն էլ Մոսկվան ընդունեց իր թղթակցի հաղորդումը. «Կարծեցյալ «Արևելյան մեծ պատնեշը», ինչպես անվանում էին հիտլերականները՝ Դնեպրի պաշտպանությունը, փշրվեց: Հաղթահարելով անասելի դժվարություններ, գվարդիական զորամիավորումները դուրս եկան Դնեպրի աջ ափը: Մարտական գործողությունները ծավալվում են հաջողությամբ: Ստեղծված են մի քանի կարևոր պլացդարմներ: Զինթղթակից Մ. Կիլոյան»:

Սակայն դժվարություններ դեռ ևս շատ կային: Հավաքելով իրենց ուժերը, հիտլերականները անցան հարձակման: Չնայած հակառակորդի հրետանային տարափին, գետանցը շարունակվում էր մոլեգին թափով: Մինչև նոր համալրում ստանալը, առաջին դեսանտայինները պետք է մարտնչեին թշնամու գերազանց ուժերի դեմ: Մի կողմ դնելով թղթապանակը, Կիլոյանը ավտոմատն առած մտավ դիրքակետ: Զինվորները դիմադրում էին աննման քաջությամբ, կրակում գնդացիրներից ու ավտոմատներից, նետում նռնակներ: Շարքերը գնալով նոսրանում էին: Խրամուղու հենաթմբի մոտ պայթած արկից վիրավորվեցին գումարտակի հրամանատար Միկոլա Սպիվակը և զինթղթակից Կիլոյանը: Բայց նրանք դիրքերից դուրս չեկան և առաջվա նման սկսեցին քաջալերել մարտիկներին.

— Հետևում թեև հայրենի գետն է, բայց նա այլևս մեզ չի ընդունի: Պետք է մարտնչել ու մեռնել այստեղ,— հնչեց Կիլոյանի ոգեշունչ խոսքը:

— Կմեռնենք ու չենք նահանջի,— միաբերան արձագանքեցին զինվորները: Գերմանացիների

Գրոհը ետ շպրտվեց: Իսկ հաջորդ օրն սկսվեց Սովետական Բանակի հաղթարշավը Նիշի վրա:

* * *

1944 թվականի աշունն էր: Սովետական զորքերն արշավում էին Հարավսլավիայի և Հունգարիայի, Մոլդավիայի և Ռումինիայի ճանապարհներով: Հիտլերյան բանակը նահանջում էր: Բելգրադի ազատագրմանը մասնակցելու համար, հոկտեմբերի 23-ին մայոր Լիլոյանը հայտնվեց Ռումինիայի Տիմոշարա ոչ մեծ քաղաքի մոտ: Նրան հանձնարարված էր գրել գվարդիական այն գնդի մասին, որը ութ օր շարունակ փողոցային կատաղի մարտեր էր մղում քաղաքն ազատագրելու համար: Գնդի երիտասարդ հրամանատարը՝ փոխգնդապետ Վլադիմիր Կարպենկոն Լիլոյանին ընդունեց սիրալիր և միայն այսքանն ասաց.

— Այստեղ, բարեկամս, գրելու շատ բան կա, բայց գրիչ շարժելու ժամանակ էլ չես ունենա:

Եվ զինթղթակիցը այդպես էլ ժամանակ չունեցավ շատ բան գրելու: Անընդմեջ մարտերը հանգիստ չէին տալիս: Սովինֆորմբյուրոն հերթական գնդի մասին նրանից ընդունեց միայն երկու ինֆորմացիա: Իսկ Տիմոշարան ալեկոծվում էր երկաթե հեղեղից: Գործում էին զենքերի բոլոր տեսակները: Թշնամին ամեն ջանք գործադրում էր պաշտպանական այդ կարևոր ընագիծը ձեռքից բաց չթողնելու համար:

Հոկտեմբերի 26-ին կատաղի մարտերը շարունակվեցին նոր թափով: Սովետական ռազմիկները գրոհով գրավեցին ևս մի քանի շենք: Բայց առաջընթացը դժվարանում էր: Հարձակման նետվեցին թշնամու ինքնագնաց հրետանիները: Արկի պայթյունից սպանվեց գնդի հրամանատար Կարպենկոն: Հենց այդ օրն էլ զինվորական թղթակցի համար տեղի ունեցավ անսպասելին: Դիվիզիայի շտաբից հայտնեցին, որ ժամանակավորապես գնդի հրամանատար է նշանակվում մայոր Մկրտիչ Լիլոյանը:

Գնդի հրամանատա՞ր... իսկ վճռական մարտը դեռ առջևում էր: Դա տեղի ունեցավ հոկտեմբերի 27-ին: Տանկերի աջակցությամբ Լիլոյանի համալրված գունդը հարձակման անցավ երկու թևերով՝ ձգտելով շրջափակման մեջ վերցնել հակառակորդին: Մեկընդմեջ հնչում էր սիրելի հրամանատարի ձայնը.

— Առա՜ջ, հաղթանակը մերն է:

— Ձախ թևից սեղմե՛լ օղակը...

Շրջափակումից վախեցած հակառակորդի վերջին միավորումները սկսեցին անկանոն նահանջել: Քաղաքի փողոցներում տարածվում էր հաղթական «ուռա»: Իսկ տներից մեկի աշտարակում կանգնած հրամանատարը այնպես էլ չիմացավ, թե ինչ կատարվեց հետո. նա ծանր վերք էր ստացել...

Հոկտեմբերի 28... Տիմոշարան արդեն ազատագրված էր, բարձրաբերձ աշտարակներից մեկի վրա փողփողում էր Սովետական դրոշակը, իսկ այնտեղ՝ ավերված շենքերից մեկի նկուղում մեռնում էր հերոսական գնդի հրամանատարը, զինթղթակից Մկրտիչ Լիլոյանը: Վերջին անգամ նա ձեռքը տարավ դեպի թղթապանակը, թույլ ժպիտով նայեց կանգնածներին և հազիվ լսելի ձայնով շշնջաց.

— Ուղարկեք Մոսկվա, Սովինֆորմբյուրոյին...

Մի ծրար հանեց՝ հասցեագրված ընտանիքին: Ուզեց ինչ-որ ուրիշ բան էլ ասել, բայց չկարողացավ. ընդմիշտ փակվեցին երեկվա հրացայտ աչքերը:

Հաջորդ օրը, Մոսկվայից ստացված հեռագրի համաձայն, Լիլոյանի դիակը փոխադրվեց ու թաղվեց Բելգրադում՝ Տիմոշարայից երեք հարյուր կիլոմետր հեռավորության վրա: Այդ օրն էլ հրա-





պարակվեց Լիլոյանին Լենինի շքանշանով պարգևատրելու հրամանը։

* * *

Անցածը թեև հուշ է դարձել, բայց մրրկածուփ օրերի հիշատակը չի մոռացվի։ Հեռավոր Բելգրադի «Սլավիա» այգում, այնտեղ, ուր կանգնած է սերբական գրի ստեղծող Վուկու Կարաջիչի արձանը, բարձրանում է նաև ճերմակավուն բազալտից կերտված մի հուշասյուն։ Նրա վրա դժվար չէ կարդալ այս մակագրությունը.

«Սովինֆորմբյուրոյի հատուկ թղթակից, բազմակի շքանշանակիր, մայոր Մկրտիչ Հովհաննեսի Լիլոյան։ Քաջի մահով զոհվել է սլավոնական հողի համար 1944 թվականի հոկտեմբերի 28-ին։ Հավերժ հիշատակ ժուռնալիստ—մարտիկին»։

Ամեն օր այստեղ այցի են գալիս Հարավսլավիայի պիոներները, հին պարտիզանները, Լիլոյանին ճանաչող Հարավսլավական 2-րդ բանակի հրամանատարները։ Նրանք թարմ ծաղկեփնջեր են դնում հուշասյան պատվանդանին։

Իսկ ամեն տարվա մայիսին, Հաղթանակի օրը, Լիլոյանի շիրմաքարի վրա շքեղ պսակներ են դրվում «Պրավդա»-ի, «Իզվեստիա»-ի, Սովինֆորմբյուրոյի և ՏԱՍՍ-ի խմբագրությունների կողմից. հենց այդ նպատակով Բելգրադ են գալիս նախկին զինթղթակիցները՝ Սերգեյ Բորզենկոն, Վասիլի Կիրսանովը, Բորիս Պոլևոյը, Սերգեյ Միշենկոն, Կոնստանտին Սիմոնովը, շատերը, շատերը։

Ու քանի-քանի տեղ է սրբությամբ հիշատակվում և մեծարվում ժուռնալիստ-մարտիկի անունը։ Մոսկվայի Ժուռնալիստի կենտրոնական տան ճեմասրահի պատին փակցված է մարմարե մի հուշատախտակ, որն ամենքի ուշադրությունն է գրավում։ Նրա վրա ոսկե տառերով գրված է Հայրենական պատերազմում հերոսաբար զոհված տասներկու ժուռնալիստի անուն։ Եվ նրանց շարքում սրտի տրոփյունով դու կկարդաս մի հարազատ ու թանկագին անուն՝ ՄԿՐՏԻՉ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ ԼԻԼՈՅԱՆ։

Նրան ճանաչում են շատերը, նրան ճանաչում ժուռնալիստների ողջ աշխարհը։ Լիլոյանի մասին քեզ համար հետաքրքիր պատմություններ կանի Սովետական Միության Հերոս, նշանավոր գրող և ժուռնալիստ Սերգեյ Բորզենկոն։ Կպատմի և ամեն խոսքի վերջում կավելացնի.

— Իսկական մարդ էր, իսկական ժուռնալիստ։

Լիլոյանի մեծադիր նկարը զարդարում է Նովոռոսիյսկում ապրող հերոսական գնդի նախկին բուժքույր Աննա (Անուշկա) Կոզլովայի բնակարանը։ «Այս դիմանկարը,— պատմում է Անուշկան,— հրամանատարի զոհվելուց հետո ես գտա գնդի շտաբում։ Լիլոյանը այն նվիրել էր Կարպենկոյին։ Տարիներ հետո մեծացրի նկարը ու շրջանակով պահում եմ։ Ես ուզում էի իմ տանն ունենալ սիրելի հրամանատարի ու լավ ժուռնալիստի դիմանկարը...»

Հեռավոր Զապորոժեում այժմ ապրում է հերոսական գնդի հրամանատարի նախկին համհարզ Իվան Կոզլովսկին, որը սրտաբուխ բանաստեղծություններ է նվիրել Լիլոյանին ու նրա մասին քաղցր հուշեր է պատմում։

Մկրտիչ Հովհաննեսի Լիլոյանին գիտեն, ճանաչում են շատերը. ուրեմն, թող ճանաչեն նաև նրա բոլոր հայրենակիցները։

# ՀԱԶԱՐԱՎՈՐ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ՄՈԼՈՐԱԿԸ



Երկնքի կապույտ ֆոնի վրա սրածայր նետի նման վեր էր խոյացել բազմաստիճան հրթիռի հաղթական ուրվագիծը: Մի քանի րոպե հետո հրթիռը բոց ու ծուխ արձակելով պոկվեց գետնից և, սղոցելով մի քանի կիլոմետր բարձրության վրա գտնվող ամպերը, անհետացավ տեսողությունից: Թռիչքային հրապարակում հավաքված մասնագետները շտապեցին հրթիռին հետևող գործիքների մոտ։ Ամեն ինչ բարեհաջող էր։ Երկրի ծանր արհեստական արբանյակը դուրս էր բերված ուղեծիր։ Բայց գործը դրանով չէր ավարտվել։ Ընտրելով հարմար պահ, ռադիոալիքների միջոցով երկրից արբանյակին հրամայվեց. «Բա՛ց թող ավտոմատ կայանը»: Եվ նույն պահին սովետական մարդկանց ձեռքերով ստեղծված միջմոլորակային ավտոմատ կայանը ուղղություն վերցրեց դեպի Վեներա։

Դա 1961 թվականի փետրվարի 12-ին էր:

Վեներա մոլորակի մասին մարդիկ գիտեին դեռևս հազարամյակներ առաջ: Արեգակից և Լուսնից հետո լինելով երկնային ամենապայծառ լուսատուն, Վեներան վաղուց է գրավել մարդկանց ուշադրությունը: Նա փայլում է երբեմն առավոտյան՝ երկնքի արևելյան մասում, երբեմն էլ երեկոյան՝ արևմտյան մասում։ Կարծելով, թե դրանք տարբեր լուսատուներ են, հին հույները մեկին անվանել էին «Ֆոսֆորիս» (երեկոյան), մյուսին՝ «Գեսպերիս» (առավոտյան) անուններով։ Հետագայում, հասկանալով իրենց սխալը, նրանք այդ պայծառ ու գեղեցիկ լուսատուին, որը սեփական լույս չունի և հայելու նման անդրադարձնում է Արեգակի ճառագայթները, անվանեցին իրենց սիրո ու գեղեցկության աստվածուհու՝ Աֆրոդիտեի անունով, իսկ հռոմեացիները վերանվանեցին Վեներա։

Վեներան բավական նման է Երկրին, այդ պատճառով հաճախ նրան անվանում են «երկրի քույր»: Նա երկրից մի քիչ փոքր է. տրամագիծը 256 կիլոմետրով պակաս է երկրի տրամագծից։ Պակաս է նաև ձգողության ուժը. Երկրի վրա 70 կիլոգրամ կշռող մարդը այնտեղ կկշռի 59 կիլոգրամ։ Վեներան, ինչպես Երկիրը, Մարսը և մնացած մոլորակները, պտտվում է Արեգակի շուրջը ժամացույցի սլաքի հակառակ ուղղությամբ։ Նա 42 միլիոն կիլոմետրով ավելի մոտ է գտնվում Արեգակին, քան Երկիրը Այս երկու մոլորակները հաճախ մոտենում են միմյանց, և նրանց միջև մնում է ընդամենը 39 միլիոն կմ. տարածություն: Չնայած դրան, մենք Վեներայի մասին շատ ավելի քիչ բան գիտենք, քան նրանից շատ ու շատ ավելի հեռու գտնվող երկնային այլ մարմինների մասին: Իսկ ինչո՞ւ, հավանաբար կզարմանաք դուք։ Բանն այն է, որ Վեներան պատված է խիտ մթնոլորտով, այնքան խիտ, որ ամենահեռատես հեռադիտակն անգամ նրա միջից ոչինչ չի տեսնում։ Բացի այդ, երբ Վեներան համեմատաբար մոտ է գտնվում Երկրին, մեր կողմն է ուղղված լինում նրա չլուսավորված մասը։

Իսկ ի՞նչ գիտենք Վեներայի մասին։

### ՕՐԸ ԵՎ ՏԱՐՎԱ ՏԵՎՈՂՈՒԹՅՈՒՆԸ

Մենք գիտենք, որ Վեներան Արեգակի շուրջը մեկ լրիվ պտույտ է կատարում 225 երկրային օրում: Բայց թե որքան ժա-



մանակում է մեկ պտույտ կատարում իր առանցքի շուրջը, կամ թե որքա՞ն է Վեներայի օրվա տևողությունը՝ հաստատ չգիտենք։ Ռուս նշանավոր աստղագետ Ա. Բելոպոլսկին դեռևս 1903-1911 թվականներին փորձեց լուծել այս խնդիրը և ասաց, որ Վեներայի օրվա տևողությունը հավասար է 34. 5 ժամի։ Ֆրան-

սիական գիտնական Ա. Դոլֆուսը և իտալական նշանավոր աստղագետ Սկիապարելլին, այն կարծիքն–են հայտնել, թե Վեներան իր առանցքի շուրջ մեկ լրիվ պտույտ կատարում է 225 օրում, այսինքն այնքան ժամանակում, որքանում նա մեկ պտույտ է կատարում Արեգակի շուրջը։ Եթե



դա իրոք այդպես լիներ, ապա Վեներան դեպի Արեգակը դարձած կլիներ միշտ իր մի կողմով (ինչպես Լուսինն է դարձած երկրի կողմը), որը պետք է խիստ տաքանար, իսկ չլուսավորված կողմում միշտ պետք է լինեին խավար ու սառնամանիք։ Սակայն այդպիսի երևույթ չի դիտվում։ Անցյալ տարի Սովետական Միությունում կատարված Վեներայի ռադիոլոկացիայի արդյունքները ցույց տվին, որ Վեներայի վրա օրվա տևողությունը մոտավորապես հավասար է երկրային տասն օրվա։

Վեներայի վրա եղանակներն իրար հերթափոխում են այնպես, ինչպես մեր մոլորակի վրա։

## ՄԹՆՈԼՈՐՏԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Ապագա տիեզերագնացներին այս հարցը շատ է հուզում, իրենց հետ թթվածին վերցնե՞ն, թե՞ հավատան գիտնականներին, որ Վեներայի մթնոլորտը նման է երկրի մթնոլորտին, և չվերցնեն։ Հայտնի է, որ Վեներայի վրա ածխաթթու գազի պաշարը մոտ 100 անգամ գերազանցում է երկրի մթնոլորտում եղած պաշարից։ 1953 թվականի գարնանը սովետական աստղագետ, պրոֆեսոր Ն. Կոզիրևը Վեներայի չլուսավորված մասում հայտնաբերեց երկրի բևեռափայլերը հիշեցնող լուսարձակումներ։ Պարզվեց, որ դրանք ազոտի մոլեկուլներ են։ Երկար ժամանակ Վեներայի մթնոլորտում ջրային գոլորշիներ և թթվածին չէին հայտնաբերվում։ 1960 թվականին ամերիկյան գիտնական Ստրոնգին հաջողվեց օդապարիկով 24 կիլոմետր վեր հանած հեռադիտակի օգնությամբ Վեներայի մթնոլորտում հայտնաբերել ջրային գոլորշիների ոչ մեծ պաշար։ Իսկ այս տարվա գարնանը Ղրիմի աստղադիտարանի գիտնականները պարզեցին, որ Վեներայի մթնոլորտում կա թթվածին, բայց թե ի՛նչ քանակով, դեռևս դժվար է ասել։



ենթադրվում է, որ այն մի քանի անգամ պակաս է երկրի մթնոլորտում եղած թթվածնից։

## ՈՐՔԱ՞Ն ՇՈԳ Է ԱՅՆՏԵՂ

Վեներայի մթնոլորտի վերին շերտերում ջերմաստիճանը գրեթե միշտ ցածր է, բայց թե ինչպիսի՞ն է ջերմաստիճանը մոլորակի մակերևույթին, գիտնականները տարբեր կարծիքներ ունեն։ Մինչև վերջերս այն հաշվվում էր մինչև + 80 աստիճան։ Ինչպիսի՛ շոգ. բայց Վեներան ավելի շոգ են պատկերացնում սովետական գիտնականներ Ա. Կուզմինը և Ա. Սոլոմոնովիչը։ Նրանց կարծիքով Վեներայի մակերևույթի ջերմաստիճանը ցերեկը հասնում է մինչև + 300 աստիճանի, իսկ գիշերը կարող է ընկնել մինչև 0 աստիճան։ Այլ գիտնականներ գտնում են, որ Վեներայի վրա ջերմաստիճանը նույնն է, ինչ մեզ մոտ։ Ոմանց կարծիքով Վեներան ունի այնպիսի պայմաններ, ինչպիսիք եղել են երկրի վրա 200 միլիոն տարի առաջ, այսինքն քարածխային դարաշրջանում, երբ մեր մոլորակն ուներ ավելի տաք ու խոնավ կլիմա և խիտ անտառներում վխտում էին հսկայական չափերի հասնող կենդանիներ։

## ՕՎԿԻԱՆՈ՞Ս Է, ԹԵ՞ ԱՆԱՊԱՏ

1949 թվականին Խարկովի Պետական համալսարանի աստղադիտարանի դիրեկտոր, ակադեմիկոս Ն. Բարաբաշևը եկավ այն եզրակացության, որ Վեներան եթե ոչ ամբողջովին, ապա մեծ մասամբ ծածկված է օվկիանոսով։ Բարաբաշևից անկախ, 1955 թվականին նման հետևության են հանգել նաև մի քանի ամերիկյան գիտնականներ։ Գիտնականների մյուս խումբը գտնում է, որ Վեներայի մակերեվույթն իրենից ներկայացնում է անջուր անապատ։ Սովետական նշանավոր մոլորակագետ Գ. Ա. Տիխովի կարծիքով Վեներայի մա-



կերևույթը ծածկված է կարմիր, դեղին և կարմրավուն գույնի բույսերով։

Ահա թե որքա՜ն քիչ բան գիտենք մեր երկնային ամենամոտ հարևաններից մեկի մասին։ Բայց հեռու չէ այն օրը, երբ մարդկային միտքը կբացահայտի նաև այդ խորհրդավոր մոլորակի բոլոր գաղտնիքները։

*ԳՈՒՐԳԵՆ ԻՎԱՆՅԱՆ*



ԱՐԵՎ ՕՐ

ԱՍՏՂԻԿ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ
(Երևան, 4 տարեկան)

# ԿԱՆԱՉ ՊՈՒՏԱՎՈՐ

ՎԻԿՏՈՐ ԴՐԱԳՈՒՆՍԿԻ

ԵՍ, Միշկան ու Ալյոնկան տնային կառավարչության մոտ, ավազին նստած՝ հարթակ էինք կառուցում տիեզերանավի արձակման համար: Մենք արդեն փորել էինք հորը, պատերին աղյուս և ապակու կտորներ շարել, իսկ մեջտեղը ազատ թողել՝ հրթիռը տեղավորելու համար: Ես դույլը բերեցի և մեջը դրի ապարատները:

Միշկան ասաց.

— Եկեք անցք շինենք կողքից, որ հենց հրթիռը թռչի, գազերը հորից դուրս գան:

Եվ մենք նորից սկսեցինք փորել, հա՛ փորել: Շուտով հոգնեցինք, որովհետև հողը քարոտ էր:

Ալյոնկան ասաց.

— Հոգնեցի. մի քիչ հանգստանանք:

Իսկ Միշկան ասաց.

— Ճիշտ է:

Եվ մենք նստեցինք հանգստանալու:

Այդ ժամանակ երկրորդ մուտքից դուրս եկավ Կոստիկը: Նա այնքան էր նիհարել, որ ճանաչել չէր կարելի: Եվ շատ գունատ էր, կարծես իսկի

... Գոյություն ունեն չվող թիթեռնիկներ: Նրանց մի քանի տեսակները ամեն տարի ճանապարհորդություն են կատարում Հյուսիսային Աֆրիկայից Անգլիա, Ֆինլանդիա, Իսլանդիա և դեպի ետ: Թիթեռնիկների երամը, անգլիական կենդանաբան, դոկտոր Վիլյամսի վկայությամբ, նման են թռչող ծաղիկների անվերջ ժապավենի: Թիթեռնիկների շատ տեսակներ թռչում են գիշերները և լիալուսնի ժամանակ: Լավ հեռադիտակով կարելի է հետևել նրանց թռիչքին:

... Վոլգա գետի հունի տակ հայտնաբերվել են ծծմբի հանքաքարի հսկայական պաշարներ: Եվ որովհետև ջրի տակ գտնվող ծծմբաշերտերի շահագործումը կապված է մեծ դժվարությունների հետ, առաջարկություն է եղել Վոլգա գետի հունը տեղափոխել մշակման վայրից 15 կմ. հեռավորության վրա:

## Գիտե՞ք որ...

... Առաջին մետաղյա կամուրջները կառուցվել են Չինաստանի լեռնային շրջաններում: Մետաղյա հաստ լարերը կամ երկաթե շղթաները կեռերով ամրացնում էին ժայռերին և նրանց վրայով փայտե տախտակամած գցում: Այդ տիպի հնագույն կամուրջը կարելի է համարել Տատև գետի խոր լեռնանցքի վրայի կախովի կամուրջը: Այն մինչև օրս էլ ծառայում է մարդկանց, չնայած որ կառուցվել է 1706 թվականին:

... Խաղաղ Օվկիանոսում, Հարավային Ամերիկայի ափերի մոտ, տաք և սառը հոսանքների «սահմանի» շրջանում, որը օվկիանոսային ամենաարդյունավետ շրջաններից մեկն է, թռչունները ուտում են տարեկան մոտ 25 միլիոն ցենտներ ձուկ: Դա կազմում է համաշխարհային ձկան մոտ տասը տոկոսը:



*(continuation)* արևի երես չէր տեսել: Նա մեզ մոտեցավ ու ասաց.

— Բարև, տղե՛րք:

Մենք միասին պատասխանեցինք.

— Բարև, Կոստի՛կ:

Նա սուսիկ-փուսիկ նստեց մեր կողքին:

Ես ասացի.

— Ի՞նչ է պատահել, Կոստիկ, ինչու՞ ես այդքան նիհար, ոնց որ կմախք լինես...

Նա ասաց.

— Կարմրուկով հիվանդ էի:

Ալյոնկան գլուխը բարձրացրեց.

— Իսկ հիմա արդեն առողջացե՞լ ես:

— Հա՛,—ասաց Կոստիկը,—հիմա բոլորովին առողջ եմ:

Միշկան մի կողմ քաշվեց Կոստիկից և ասաց.

— Զվարակես հանկարծ:

Իսկ Կոստիկը ժպտաց.

— Չէ՛, չէ՛, ի՞նչ ես վախենում: Ես վարակիչ չեմ: Երեկ բժիշկն ասաց, որ ես արդեն կարող եմ ընկերներիս հետ խաղալ:

Միշկան նորից մոտեցավ Կոստիկին, իսկ ես հարցրի.

— Իսկ երբ հիվանդ էիր, ցավ շա՞տ էիր զգում:

— Չէ՛,— պատասխանեց Կոստիկը,—ցավ չէի զգում: Բայց ձանձրալի էր: Ինձ զանազան խաղալիքներ էին նվիրում, ես անընդհատ նրանցով էի զբաղվում, ուղղակի զահլաս գնաց:

Ալյոնկան ասաց.

— Հա՛, հիվանդանալը լավ բան է: Երբ հիվանդանում ես, միշտ նվերներ են առնում:

Միշկան ասաց.

— Բայց առողջ ժամանակն էլ են նվերներ առնում. ծննդյան օրը կամ երբ տոնածառ է լինում:

Ես ասացի.

— Մեկ էլ նվերներ են առնում, երբ հաջորդ դասարան հինգերով ես փոխադրվում:

Միշկան ասաց.

— Ինձ ոչինչ չեն առնում: Բոլոր առարկաներից երեքներ ունեմ: Բայց երբ կարմրուկով ես հիվանդանում, միևնույն է, առանձնապես ոչինչ չեն նվիրում, քանի որ հետո բոլոր խաղալիքները պետք է այրել: Շատ վատ, անպետք հիվանդություն է կարմրուկը:

Կոստիկը հարցրեց.

— Իսկ մի՞թե լավ հիվանդություններ էլ են լինում:

— Օհո՜,—ասացի ես,—ինչքա՜ն կուզես: Ջրծաղիկը, օրինակ: Շատ լավ, շատ հետաքրքիր հիվանդություն է: Երբ ես հիվանդացել էի, ամբողջ

... Աշխարհի ամենամեծ արհեստական ջրամբարը, որն ունենալու է 130 միլիարդ խորանարդ մետր ծավալ (Կույբիշևյան ծովից երկու անգամ մեծ), կառուցվելու է Ասուանից հարավ ընկած վայրում (Սուդան): Այն կգրավի մոտ 150 կմ. տարածություն:

## Առանց խոսքի



Նկ. ՀՐ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ




մարմնիս ամեն մի խոցին կանաչ դեղ քսեցին։ Ես իսկական ընձառյուծ էի դարձել։ Ի՞նչ է, վա՞տ է։

— Իհա՛րկե, լավ է,— ասաց Կոստիկը։

Ալյոնկան ինձ նայեց և ասաց.

— Սրմնջուկի ժամանակ էլ կանաչ դեղ են քսում։ Սրմնջուկն էլ շատ գեղեցիկ հիվանդություն է։

Բայց Միշկան միայն ծիծաղեց.

— Համա ասացիր՝ «գեղեցիկ հիվանդություն»։ Երկու-երեք պուտ կքսեն, և դրանով էլ կվերջանա ամբողջ գեղեցկությունը։ Սրմնջուկը դատարկ բան է։ Ամենքից շատ ես գրիպն եմ սիրում։ Երբ գրիպով հիվանդ ես, թեյ են տալիս քեզ ազնվամորու մուրաբայով։ Ինչքան կուզես՝ կեր, ուղղակի հավատալդ չի գալիս։ Մի անգամ, երբ հիվանդ էի, մի ամբողջ բանկա կերա։ Մայրիկը նույնիսկ զարմացավ։ «Մի տե՛ս,— ասում է,— երեխան գրիպ է, ջերմաստիճանը երեսունութ, բայց լավ ախորժակ ունի»։ Տատիկն էլ ասաց. «Գրիպի տարբեր տեսակները կան։ Սրանը, երևի, նոր տեսակի գրիպ է։ Էլի տվեք մուրաբա, նրա օրգանիզմն է պահանջում»։ Եվ ինձ էլի՛ տվին, բայց այլևս ուտել չկարողացա։ Այնպես եմ ափսոսում... Երևի գրիպն էր ազդել ինձ վրա։

Միշկան գլուխը բռունցքին հենեց, մտածմունքի մեջ ընկավ, իսկ ես ասացի.

— Գրիպը, իհարկե, լավ հիվանդություն է, բայց կոկորդի գեղձերի հիվանդության հետ ոչ մի կերպ չի կարող մրցել։

— Իսկ ինչու՞,— ասաց Կոստիկը։

— Նրա համար, որ,— ասացի ես,— երբ կոկորդի գեղձերը կտրում - հեռացնում են, պաղպաղակ են տալիս, կոկորդը սառեցնելու համար։ Իսկ դա քո մուրաբայից տասն անգամ լավ է։

Ալյոնկան ասաց.

— Իսկ կոկորդի գեղձերն ինչի՞ց են առաջանում։

Ես ասացի.

— Հարբուխից։ Դրանք սնկի նման քթի մեջ են բուսնում խոնավությունից։

Միշկան հոգոց քաշեց ու ասաց.

— Հարբուխը դատարկ հիվանդություն է։ Քթիդ մեջ ինչ-որ դեղ են կաթեցնում, բայց իսկի չի օգնում, ավելի է սաստկանում։

Ես ասացի.

— Բայց հարբուխի ժամանակ կարող ես նավթ խմել, քանի որ ոչ մի հոտ չես զգում։

— Իսկ ինչու՞ խմել նավթը։

Ես ասացի.

— Եթե չխմես էլ, կարող ես բերանդ առնել։ Մի մեծ կում կանես, հետո կվերցնես վառվող մի փայտ և բերանիցդ նավթը կփչես վրան. Ի՜նչ գեղեցիկ բոցե շատրվան կստացվի։ Ես կրկեսում էի տեսել ու չէի հասկացել, թե ինչպե՞ս է արվում այդպիսի շատրվանը, իսկ ինձ Գրիշկան բացատրեց, նա կրկեսի մասին ամեն ինչ գիտե։

— Կրկեսում զորտ են կուլ տալիս,— ասաց Ալյոնկան։

— Ճիշտ է,— ասաց Կոստիկը,— մկներ էլ են ուտում... Ծիծաղեցնելու համար։

— Կոկորդիլոսներ էլ,— ավելացրեց Միշկան։

Ես ծիծաղից թուլացա։ Ինչ ասես, որ չեն հնարի։ Չէ՞ որ ամենքն էլ գիտեն, որ կոկորդիլոսը զրահապատված է։ Եվ ասացի.

— Դու, երևի, խելքդ կորցրել ես, Միշկա։ Ինչպե՞ս կարող ես կոկորդիլոս ուտել, երբ նա կարծր է և ոչ մի կերպ չի ծամվի։

— Իսկ խաշա՞ծ,— ասաց Միշկան։

— Ո՞նց չէ, հապա մի փորձիր կոկորդիլոսը խաշել,— բղավեցի ես Միշկայի վրա։

— Չէ՞ որ նա մեծ ու սուր ատամներ ունի,— ասաց Ալյոնկան։ Երևում էր, որ նա արդեն վախենում է։

Իսկ Կոստիկն ավելացրեց.

— Օր չի լինում, որ կոկորդիլոսը չուտի իր զսպիչ-մարզիչներից որևէ մեկին։

Ալյոնկան ասաց.

— Ծի՞շտ։— Եվ աչքերը կլորացան սպիտակ կոճակների պես։

Կոստիկը շուռ եկավ ու թքեց։

Ալյոնկան ծոեց բերանը.

— Լավ բաների մասին էինք խոսում՝ գրիպի ու մրմնջուկի մասին, իսկ հիմա կոկորդիլոսներն եք հիշել։ Ես նրանցից վախենում եմ...

Միշկան ասաց.

— Հիվանդությունների մասին արդեն ամեն ինչ ասացինք։ Օրինակ՝ հազը։ Ի՞նչ օգուտ կարող է տալ։ Շատ-շատ՝ դպրոց չես գնա...

— Այդ էլ բան է,— ասաց Կոստիկը։— Բայց դուք ճիշտ եք ասում՝ երբ հիվանդանում ես, բոլորն էլ քեզ ավելի են սիրում։ Ոչ մի համեմատություն...

— Փաղաքշում են,— ասաց Միշկան,— շոյում... Ես նկատել եմ՝ երբ հիվանդ ես, ինչ խնդրես, կտան, ինչ խաղ ուզես, կամ հրացան, կամ զոդիչ։

Ես ասացի.

— Իհարկե, հարկավոր է միայն, որ հիվանդությունն ինչքան կարելի է սաստիկ լինի։ Այ, թե ոտքդ կոտրես կամ վիզդ, ինչ ուզես՝ կգնեն։

Ալյոնկան ասաց.

— Հեծանիվ է՞լ։

Իսկ Կոստիկը քմծիծաղ տվեց.

— Իսկ եթե ոտքդ կոտրված է, հեծանիվն ինչի՞դ է պետք։

Ես ասացի.

— Բայց չէ՞ որ կոտրված ոտքը նորից կկպչի։

Կոստիկն ասաց.

— Ծի՞շտ։

Ես ասացի.

— Իհարկե, կկպչի։ Չէ՞, Միշկա։

Միշկան գլխով արավ, իսկ Ալյոնկան շորը ծընկներին քաշեց և հարցրեց.

— Իսկ ինչու՞, երբ մի տեղը վառես կամ ընկնելուց մի տեղդ կապտի, ընդհականակը, նույնիսկ կարող է պատահել դեռ ծեծեն էլ։ Հապա ինչու՞ այդպես է լինում։

Ես ասացի.

— Անարդարությու՜ն,— և ոտքս կպավ դույլին, որի մեջ դրված էին ապարատները։

Կոստիկը հարցրեց.

— Այս ի՞նչ եք ուզում շինել այստեղ։

Ես ասացի.

— Հարթակ տիեզերանավ արձակելու համար։

Կոստիկն ուղղակի գոռաց.

— Հապա ինչու՞ ձայն չեք հանում։ Վերջ տըվեք խոսակցությանը։ Եկեք, շուտ կառուցենք։

Եվ մենք վերջ տալով խոսակցությանը՝ շտապ գործի անցանք։

Ռուսերենից թարգմ. Ա. ՏԵՐ—ԳՐԻԳՈՐՅԱՆ






# ՋԱՐՄԱՆԱՀՐԱՇ ԿԵՏ-ՁՈՒԿ

Վ. ԿՈՆՍՏԱՆՏԻՆՈՎ

Հուլիսի տասներեքի վաղ առավոտն է։ «Բալխաշ» շոգենավը մոտենում է իմ ճանապարհորդության վերջնակետին՝ Սիմուշիր կղզուն, որի վրա գտնվում է «Սկալիստի» կոչվող կերամբշակման կոմբինատը։ Կղզուց մի փոքր դեպի արևելք, քարտեզի վրա գիծ է քաշված ու գրված է՝ «Օրերի սահմանը»։ Այստեղ ժամանակի տարբերությունը Մոսկվայի հետ կազմում է լրիվ ութ ժամ։

Նավը, երեք օր ու գիշեր է, ինչ շարժվում է համատարած մառախուղի միջով։ Այնքան էլ ուժեղ չի օրորվում, որովհետև մեծ շոգենավ է։ Նավի աջ կողմում, մառախուղի բացվածքներում երևում է հրաբխի նմանվող մի հսկա լեռ։ Ոչինչ հնարավոր չէ տարբերել, բայց հետո գնացող կետորսները ասում են. «Անա և «Սկալիստին»։



տո երևում է կետի հսկա մեջքը՝ լողաթևով, նա մի քիչ դարչնագույն է թվում գորշ-կանաչավուն ջրի ֆոնի վրա: Կետերը շարժվում են խմբերով, դրա համար էլ միանգամից երևում են մի քանի շատրվաններ: Ֆինվալ-կետի շատրվանի բարձրությունը մոտ ութ մետր է: Այդ օրը մեզ պատահում էին միայն ֆինվալ-կետեր:

Կետեր: Վերնակամրջակի վրա, նավապետից և ավագ-օգնականից բացի, հավաքվել են հերթափոխից ազատ կետորսները: Նրանք նայում են հեռադիտակներով, աղմկում են, ինչպես ֆուտբոլի ժամանակ: Թնդանոթի մոտ կանգնած է հարպունավորը, որը դիրիժորի է նման. Նրա ձեռքի շարժմանը բոլորն են հետևում:

— Ամբողջ արագությամբ առա՛ջ,— բղավում է հարպունավորը, և նավապետը կամրջակի վրա նրա խոսքերը կրկնում է մեգաֆոնի միջոցով:

Նավն արագ սլանում է, կտրելով կետի ճանապարհը:

— Դանդաղ: Ամենադանդաղ:

Կետը բոլորովին մոտ է. Նավը դանդաղեցնում է ընթացքը, որպեսզի հարպունավորը կարողանա ավելի ճշգրիտ նշան բռնել, և որ գլխավորն է, որպեսզի կետը չընկնի նավի տակ. չէ՞ որ նա կարող է ճզմել ու ջարդել թրագյանն ու պտուտակները:

Ահա նավը կարողացավ մոտենալ ամենահարմար տարածությանը: Հարպունավորը ամբողջովին ուշադրություն է դառնում. Թնդանոթը շրջվում է առանցքի վրա: Նշանառություն: Թնդաձայն կրակոց: Ավագ մեխանիկը ճոպանը քանդում է վերահանից: Հարպունը կետի մարմնի մեջ է: Հարպունի ծայրին նռնակն է, որը պայթում է, բացելով հարպունի խարխափի ճանկերը և սպանված կետը կապվում է: Վերահանը նրան քաշում է նավի մոտ: Կետի մարմնի մեջ մտցնում են ներսից դատարկ մետաղյա նիզակ, որի միջով ռետինե փողրակով օդ է մղվում՝ մարմնին լողալունություն հաղորդելու համար:

Հետո կետի պոչին լապտեր ու



*Սապատաձուկ*

դրոշակ են ամրացնում և թողնում են օվկիանոսում: Նրա տեղադրությունը նշանակում են ծովային քարտեզի վրա և հեռանում՝ որսը շարունակելու:

Հետաքրքիր է, որ հենց հնչում է հարպունային թնդանոթի կրակոցը, նույն րոպեին թռչում գալիս են թռչունները՝ մրրկահավերը, ճայերը, հյուսիսային ջրահավերը:

Մինչև մութն ընկնելը «Ցիկլոնի» նավակողի մոտ կար մի մեծ կետ-ֆինվալ ևս: Հետո մեր նավը վերադարձավ: Ես շատ էի ուզում տեսնել, թե այդ ինչպես գիշերը կգտնեն կետին, որ թողնվում է «դրոշակի վրա», դրա համար էլ չպառկեցի քնելու:

Մենք նստած էինք ընդհանուր նավասենյակում, և երիտասարդ գիտաշխատող, պրակտիկանտ Սլավան ինձ պատմում էր կետերի մասին:

Առաջ երբեք էլ մտքովս չի անցել, որ կետը փղից բավականաչափ մեծ է: Դուրս է գալիս, որ երեսուներեք մետրանոց երկնագույն կետը՝ բլյուվալը, քաշում է մոտավորապես հարյուր քսան տոնն: Դա քսանհինգ փղի քաշ է: Կետերը ամենախոշորներն են ոչ միայն այժմ գոյություն ունեցող կենդանիներից, նրանք երկրի վրա երբեմնի ապրողներից էլ մեծ են, խոշոր են դինոզավրերից, մամոնտներից և ուրիշ մինչպատմական հսկաներից:

Ես իմացա, որ անգամ նորածին կետիկն էլ փղից ավելի ծանր է: Այս փոքրիկը, քաշով մինչև վեց տոնն, ծնվում է օվկիանոսում և արդեն տասնհինգ րոպեից հետո լողում է իր մոր հետ ու կերակրվում նրա կաթով:

Ես իմացա, որ լինում են ատամնավոր ու բեղավոր կետեր, որ նրանք հինգ կիլոմետրից ավել տարածության վրա լավ են լսում, որ կաշալոտը համարձակ կերպով մարտի է բռնվում ութոտանու հետ և հաղթանակ տանում, որ անգամ նորածին կետիկի համար սարսափելի չեն այնպիսի գիշատիչներ, ինչպես խոշոր շնաձկները:

Զրուցելով մենք զգացինք, որ նավը դանդաղեցնում է ընթացքը և շտապեցինք տախտակամած: Ծովում, կետորսանավի



*Նռնակով ուսատեգ*

քթի առաջ, օրորվելով ալիքների վրա, վառվում էր լամպը, «դրոշակի» ծայրին:

Կետը գտնելու գործում մեզ օգնեց զարմանալի մի գործիք՝ ռադիոլոկատորը: Այն ինձ ցույց տվին երեկ, երբ մենք ծով էինք դուրս գալիս: Գիշեր էր: «Ցիկ-



տո երևում է կետի հսկա մեջքը՝ լողաթևով, նա մի քիչ դարչնագույն է թվում գորշ-կանաչավուն ջրի ֆոնի վրա: Կետերը շարժվում են խմբերով, դրա համար էլ միանգամից երևում են մի քանի շատրվաններ: Ֆինվալ-կետի շատրվանի բարձրությունը մոտ ութ մետր է: Այդ օրը մեզ պատահում էին միայն ֆինվալ-կետեր:

Կետեր: Վերնակամրջակի վրա, նավապետից և ավագ-օգնականից բացի, հավաքվել են հերթափոխից ազատ կետորսները: Նրանք նայում են հեռադիտակներով, աղմկում են, ինչպես ֆուտբոլի ժամանակ: Թընդանոթի մոտ կանգնած է հարպունավորը, որը դիրիժորի է նման. Նրա ձեռքի շարժմանը բոլորն են հետևում:

— Ամբողջ արագությամբ առա՜ջ,— բղավում է հարպունավորը, և նավապետը կամրջակի վրա նրա խոսքերը կրկնում է մեգաֆոնի միջոցով:

Նավն արագ սլանում է, կտրելով կետի ճանապարհը:

— Դանդաղ: Ամենադանդաղ:

Կետը բոլորովին մոտ է. Նավը դանդաղեցնում է ընթացքը, որպեսզի հարպունավորը կարողանա ավելի ճշգրիտ նշան բռնել, և որ գլխավորն է, որպեսզի կետը չընկնի նավի տակ. չէ՞ որ նա կարող է ճզմել ու ջարդել թրագյանն ու պտուտակները:

Ահա նավը կարողացավ մոտենալ ամենահարմար տարածությանը: Հարպունավորը ամբողջովին ուշադրություն է դառնում. Թնդանոթը շրջվում է առանցքի վրա: Նշանառություն: Թնդաձայն կրակոց: Ավագ մեխանիկը ճոպանը քանդում է վերահանից: Հարպունը կետի մարմնի մեջ է: Հարպունի ծայրին նռնակն է, որը պայթում է, բացելով հարպունի խարիսխի ճանկերը և սպանված կետը կապվում է: Վերահանը նրան քաշում է նավի մոտ: Կետի մարմնի մեջ մտցնում են ներսից դատարկ մետաղյա նիզակ, որի միջով ռետինե փողրակով օդ է մղվում՝ մարմնին լողայնություն հաղորդելու համար:

Հետո կետի պոչին լապտեր ու



Սապատաձուկ

դրոշակ են ամրացնում և թողնում են օվկիանոսում: Նրա տեղադրությունը նշանակում են ծովային քարտեզի վրա և հեռանում՝ որսը շարունակելու:

Հետաքրքիր է, որ հենց հնչում է հարպունային թնդանոթի կրակոցը, նույն րոպեին թռչում գալիս են թռչունները՝ մրրկահավերը, ճայերը, հյուսիսային ջրահավերը:

Մինչև մութն ընկնելը «Ցիկլոնի» նավակողի մոտ կար մի մեծ կետ-ֆինվալ ևս: Հետո մեր նավը վերադարձավ: Ես շատ էի ուզում տեսնել, թե այդ ինչպես գիշերը կգտնեն կետին, որ թողնվում է «դրոշակի վրա», դրա համար էլ չպառկեցի քնելու:

Մենք նստած էինք ընդհանուր նավասենյակում, և երիտասարդ գիտաշխատող, պրակտիկանտ Սլավան ինձ պատմում էր կետերի մասին:

Առաջ երբեք էլ մտքովս չի անցել, որ կետը փղից բավականաչափ մեծ է: Դուրս է գալիս, որ երեսուներեք մետրանոց երկնագույն կետը՝ բլյուվալը, քաշում է մոտավորապես հարյուր քսան տոնն: Դա քսանհինգ փղի քաշ է: Կետերը ամենախոշորներն են ո՛չ միայն այժմ գոյություն ունեցող կենդանիներից, նրանք երկրի վրա երբեմնի ապրողներից էլ մեծ են. խոշոր են դինոզավրերից, մամոնտներից և ուրիշ մինչպատմական հսկաներից:

Ես իմացա, որ անգամ նորածին կետիկն էլ փղից ավելի ծանր է: Այս փոքրիկը, քաշով մինչև վեց տոնն, ծնվում է օվկիանոսում և արդեն տասնհինգ րոպեից հետո լողում է իր մոր հետ ու կերակրվում նրա կաթով:

Ես իմացա, որ լինում են ատամնավոր ու բեղավոր կետեր, որ նրանք հինգ կիլոմետրից ավել տարածության վրա լավ են լսում, որ կաշալոտը համարձակ կերպով մարտի է բռնվում ութոտանու հետ և հաղթանակ տանում, որ անգամ նորածին կետիկի համար սարսափելի չեն այնպիսի գիշատիչներ, ինչպես խոշոր շնաձկները:

Զրուցելով մենք զգացինք, որ նավը դանդաղեցնում է ընթացքը և շտապեցինք տախտակամած: Ծովում, կետորսանավի



Նռնակով ուսատեղ

քթի առաջ, օրորվելով ալիքների վրա, վառվում էր լամպը, «դրոշակի» ծայրին:

Կետը գտնելու գործում մեզ օգնեց զարմանալի մի գործիք՝ ռադիոլոկատորը: Այն ինձ ցույց տվին երեկ, երբ մենք ծով էինք դուրս գալիս: Գիշեր էր: «Ցիկ-

լոնը» շրջապատված էր անթափանցելի խավարով, իսկ ռադիոլոկատորի կանաչավուն էկրանի վրա, որը նման է հեռուստացույցի, պարզորոշ երևում էին Սիմուշիր կղզու ուրվագծերը:

Կետին երկրորդ ֆինվալի հետ ամուր կապեցին նավի պոչից ու «Ցիկլոնը» ուղևորվեց դեպի Սիմուշիր կղզին: Առավոտյան «Սկալիստի» խարսխակայանում ես հրաժեշտ տվեցի անձնակազմին և նավը նորից ծով դուրս եկավ:



* * *

Այնտեղ ուր մշակվում են բռնված կետերը, ջրի վրա և օդում, անհաշիվ քանակությամբ թռչուններ կան, հարյուր հազարավոր հյուսիսային ջրահավեր և մեծ ճայեր: Նրանք լափում են ողջ թափթփուկը և մաքրում ջուրը: Եթե չլինեին այս զարմանալի «սանիտարները», ապա ավանի բնակիչները կտառապեին գարշահոտությունից:

Թռչունները թողնում են բոլորովին մոտիկ գալ իրենց, բայց ոչ ոք նրանց չի վնասում: Բոլորն էլ լավ հասկանում են, թե նրանք ինչպիսի հսկայական օգուտ են բերում:

Բացի ֆինվալ-կետերից, աշխատանքային հրապարակի վրա ես մեծ ատամնավոր կետ-կաշալոտ ևս տեսա: Կաշալոտն ունի սև ռետինին շատ նման պինդ կաշի: Ես փորձեցի այն կտրել փոքրիկ դանակով, բայց ոչինչ չստացվեց:

Կաշալոտի նեղ ու երկար ծնոտում դուրս են ցցված քառասուներկու խոշոր ատամներ: Ֆինվալ-կետին կոչում են նաև սննդի կետ, նրա միսն առանձնապես համով է, և նրանից պատրաստում են սննդատու պահածոներ:

Աշխատանքային հրապարակում իմ բոլոր տեսածները հիշեցնում էին բարդ վիրահատություն: Այստեղ ամեն ինչ տեղի է ունենում առանց ավելորդ աղմուկի ու հարայհրոցի: Միայն ցածրաձայն լսվում են «Վիրա», «Մայնա»,[1] հրամանները:

Հսկա կենդանուն հենց բարձրացնում են աշխատանքային հրապարակ, տեղն ու տեղը ճեղքում են հոկեյի փայտերին նմանվող սուր, կեռ դանակներով: Ճոպանի օգնությամբ վերահանով նրա մեջքից հանվում է մորթին ճարպի հաստ շերտով, այդ բոլորը գնում է հրապարակի մյուս ծայրը: Դուրս են հանում մեծ լյարդը (մեծ կետերի մոտ դրա քաշը մոտ մեկ տոնն է) և մետաղյա կեռերի օգնությամբ քարշ են տալիս դեպի աղ դնելու տակառները: Կետի լյարդը մեծ արժեք ունի: Նա «Ա» վիտամինի խտածո է:



Արագ կտրտվում է միսը: Եվ երբ մնում է միայն ողնաշարը այն տարվում է դեպի մեխանիկական սղոցը, որը և ողնաշարը կտրատում, բաժան-բաժան է անում: Մոտավորապես քսան րոպե էլ չի անցնի, և հրապարակը, որը մաքրվում է փողրակից խփող ջրի հզոր հոսանքներով, պատրաստ է նոր կետի համար: Միայն աշխատանքային հրապարակի հեռավոր ծայրում մշակում են կետի գլուխը: Նրա մեջ կա արժեքավոր դեղանյութ:

Կետորսությունը ժողովրդական տնտեսությանը շատ մեծ օգուտ է բերում: Կետի հսկա մարմնից ոչինչ չի կորչում:

Կետի յուղը սննդարար է, վիտամիններով հարուստ: Նրանից շատ բան է հայթայթվում: Մի կետից մինչև երեսուն տոնն յուղ է ստացվում՝ այնքան, որքան կարող է տալ հազար խոզը:

Բեղավոր կետերի մսից պատրաստում են համեղ, սննդարար պահածոներ: Կետի ալյուրը, որ հիանալի կեր է կոլտնտեսային անասունների համար, պատրաստվում է կետի ոսկորներից ու չօգտագործվող մսից: Կետի կաշուց պատրաստվում են զանազան տեսակի իրեր՝ սկսած հաստ շարժափոկերից մինչև ամենանուրբ խրոմը:

* * *

Մի ամսից ավել ես ապրեցի կետի կոմբինատի ավանում: Այդ ժամանակաընթացքում ես բարեկամացա բազմաթիվ լավ մարդկանց հետ: Իմ փոքրիկ «արվեստանոցը» սիրում էին այցելել և՛ կետորսները, և՛ բանվորները՝ կետը մշակող վարպետները, և՛ իմ ընկերները՝ ձկնորսները: Հասկանալի է, ինձ մոտ հաճախակի հյուր էին գալիս նաև երեխաները:



*Թարգմ. Ս. ՀԱՐԴԵՆՅԱՆ*

[1] «Բարձրացրու», «ցածրացրու»:

# ԱՐՇԱԿԻ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐԸ

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Դուք, իհարկե, չեք ճանաչում Արշակին։ Դե ինչպե՞ս ճանաչեք, երբ նա շատ է փոքր և այս տարվա ապրիլի տասնվեցին միայն դարձավ հինգ տարեկան։ Մեր տան ամենասիրված երեխան է Արշակը։ Ես հաճախ եմ զրույց անում նրա հետ։ Մի երկու տարի առաջ իմ ուշադրությունը գրավեցին նրա մանկական ասույթները և ես գրի առա դրանք։ Այդ ասույթները շատ են, և դրանցից մի քանիսը ժամանակին կներկայացնեմ ընթերցողին։ Բայց այժմ ես ուզում եմ պատմել, թե Արշակն ինչպես գրեց իր առաջին պատմվածքները։ Գուցե ձեզ համար հետաքրքիր էլ լինեն դրանք, երեխաներ։

* * *

Մի օր Արշակը մոտեցավ սեղանիս.
— Հայրիկ, մի թուղթ տուր։
— Ի՞նչ ես անում, — հարցրի։
— Պատմածք եմ գրում։
Ես մի թուղթ տվի նրան։ Նա մատիտ գրտավ, նստեց նարդու սեղանի մոտ ու սկսեց գծմծել։ Քիչ հետո մոտեցավ ինձ։



— Պատմածքս գրեցի։
— Ո՞ւր է, — ժպտացի ես։
Նա ինձ մեկնեց աշակերտական տետրակի այն թուղթը, որ ես էի տվել նրան։ Ես զարմացա։ Թղթի վրա, տողերի արանքում Արշակը մանր զիգզագաձև գծիկներ էր քաշել, տասը տող մի էջի վրա, վեց տող՝ մյուսին։ Առաջին էջի վրա նույնիսկ անուն և ազգանուն էր «գրել»-գծմծել, տակն էլ իր «պատմածքի» վերնագիրը։
— Լավ է, — ասացի ես։
— Հիմի կարդամ, լսիր, — անսպասելի ասաց նա։
Ես զարմացա։ Խծբծել նա կարող էր, բայց թե ի՞նչ պիտի կարդար։
— Կարդա, — ասացի ես։



Արշակը թուղթը բռնեց աչքերի դեմ ու գլուխը համաչափ աջից-ձախ տանելով կարդաց իր «պատմածքը»։ Ի միջի այլոց, հիշեցնեմ, որ մենք նոր էինք վերադարձել իմ ծննդավայր Գորիսից, ուր ապրում էինք մեր տանը։ Ամբողջ օրը Արշակն իր քրոջ՝ Անահիտի ու իմ քրոջ աղջկա՝ Արևիկի հետ խաղում էր այգու ծառերի տակ, ջրերի հետ։
Ահա նրա «պատմածքը»։

* * *

— Անահիտն ու Արևիկը բարձրացան մեր թթի ծառը։ Տեսան շատ սպիտակ թութ։ Հետո տեսան մի հատ մեղրաճանճ։ Արևիկն ասաց.
— Մեղրաճանճ, ա՛յ մեղրաճանճ, հեռու կաց, մի քիչ թութ ուտեմ։

Մեղրաճանճն ասաց.

— Կկծեմ։

Արևիկը չլսեց։ Ուզեց թութ ուտի, մեղրաճանճը կծեց նրա մատը։ Արևիկը լաց լինելով փախավ։ Փախավ, որ մեղրաճանճը մեկ էլ չկծի։ Գնաց իրենց տուն։ Անահիտը հետևից գնաց, Արևիկին չճարեց։ Ուրիշ աղջիկ ճարեց։ Եռ դառան, պլոճիկներ կերան, հավն էլ հետը կերան։ Եկան Երևան։

Բայց շատ դժվար է սամալյոտով թռչելը։

Եկան։ Անահիտն ասաց.

— Էս ինչ լավ՚ կայարան է, էս ինչ լավ պագարնիկներ են։

*
* *

Արշակը թուղթը ցած դրեց ու նայեց ինձ։

— Էսքանը բոլ ա, հայրիկ։ Էսքանը պահի, բայց ոչ մի տեղ չգրես։

Դրանից հետո ամեն օր Արշակին ասում էի.

— Արշակ, թուղթ տամ, մի «պատնածք» գրի։

— Է՜... հավես չունեմ, հայրիկ, — ամենայն լրջությամբ ասում էր նա։

Բայց ինչպես երևում է, նա իրեն այնքան էլ երկար զսպել չկարողացավ և վերջերս էլի երկու նոր պատմվածք գրեց։ Ահա դրանք։

*
* *

Մի մուկ բարձրանում է ծառը, որ տանձ ուտի։ Հանկարծ՝

— Մը՜ռռ...

Կատուն եկավ։ Մուկը բարձրացավ, բարձրացա՜վ, շատ, շա՜տ բարձրացավ, կատուն էլ։ Մուկը թռավ էն մի ծառը, նորից թռավ էն մի ծառը։ Հետո էլ ծառ չկար։ Կատուն ուզում էր իրեն բռնի։

—Պո՜ւռռ...—Մուկը թռավ բարձր ճյուղին։ Տեսավ մի մեղրաճանճ։ Ասաց. — Ճանճ, ա՛յ մեղրաճանճ ջան, կատվին կծի։

Մեղրաճանճն էլ կատվի ա՛յ էս բանից կծեց (Արշակը ցույց է տալիս իր ականջի բլթակը)։

— Հի՛, հի՜, — արավ մուկը։

Կատուն կանգնեց ոտքերի վրա ոնց որ աղվես ու փախավ...

Մուկն էլ շուտ-շուտ փախավ, մի ճյուղի վրա կանգնեց։ Ճյուղն էլ շարժվեց։ Մուկն ուզում էր ընկներ, բայց ճյուղից բռնեց։

Մուկը ծառից իջավ, հողը քերեց, քերեց, մտավ հողի տակ, ազատվեց։

Բայց մեղրաճանճը մեռավ։ Մե՜ղք։

*
* *

Տատիկը մի անգամ թութ էր թափում։ Արշակն ուրախանում էր բալկոնում։ Այնքա՛ն էր ուզում տատիկը տեսներ Արշակին։ Արշակը կռացավ։ Տատիկն արդեն գալիս էր տուն։ Արշակը պատին էր կպել։



Տատիկը գնաց։ Արշակը եկավ թութը կերավ։ Այնքա՛ն կերավ, որ Արշակի փորը տռռզեց։ Եվ այնքան տռզեց, որ ուզում էր պայթեր։ Արշակը լիմոնադ խմեց։ Փորը չփակեց, հլա ուռած մնաց։ Էն մի լիմոնադն էլ որ խմեց՝ փակեց։ Ավելի լավ էր տռզած, քան թե փակած։

Տատիկն ասում է.

— Թութը ու՞ր է, էսքան քի՞չ է թութը։

Արշակն ասաց.

— Տե՛ս, տատիկ, փորս տռզել է։

Տատիկն ասաց.

— Ա՜, ես գիտեմ, որ դու ես թութը կերել։

Արշակն ասաց.

— Հա՛, ես եմ կերել։

Տատիկը ջղայնացավ։ Գնաց նորից թութ թափեց։ Մի աղվես գալիս ա տատիկին կըծելու։ Ես գնացի դանակը վեկալա, որ չըվախենամ։ Գնացի աղվեսին մորթեցի, միսը դեն ածեցի, մորթին շինեցի շուբա։ Էնենց փափո՜ւկ էր...

Շուբան տվեցի տատիկին, տատիկն ուրախացավ, ինձ հետ բարիշեց։

# ՊԻՍՏԱԿԵՆԻ

Ովքեր եղել են Իջևանի, Նոյեմբերյանի, Ալավերդու, Եղեգնաձորի, Մեղրու շրջանների ցածրադիր մասերում, ապա նրանք նկատած կլինեն, որ ամառվա շոգ ամիսներին, առավելապես հարավային անջրդի և անտառազուրկ լանջերի վրա չորանում են անգամ խոտերը: Բայց կա մի ծառատեսակ, որ ամառվա այդ կիզիչ օրերին պաշտպանում է իր փարթամ ու կանաչ սաղարթը և զարդարվում պտուղների ողկույզներով: Դա խնկական պիստակենին է:

Հայաստանի համար խնկական պիստակենին նոր կուլտուրա է: Հոկտեմբերյանի շրջանի Ժդանովի անվան և Նոյեմբերյանի շրջանի Այրումի պտղաբուծական սովխոզներում պիստակենու այգիներն արդեն պտուղ են տալիս: Իջևանի շրջանի Ուզունթալայի պետական տնկարանում պիստակենու առաջին այգին հիմնվեց 1938 թվականի գարնանը: Խնկական պիստակենու պտուղները մյուս բոլոր ընկուզավոր ծառատեսակների պտուղներից ամենահամեղն ու ամենաարժեքավորն են: Դրանք նմանվում են նշին, միայն քիչ փոքր են: Պտղի միջուկը կանաչավուն է, պարունակում է շատ ճարպեր և սպիտակուցային նյութեր: Միջուկն օգտագործվում է ինչպես թարմ, այնպես էլ վերամշակված վիճակում: Պիստակենու պտուղներն օգտագործվում են հրուշակեղենի, բարձրորակ պաղպաղակների ու երշիկների արտադրության մեջ: Բոված պտուղներից ստացվում է արժեքավոր յուղ:



Պիստակը, որպես անապատային ու կիսաանապատային վայրի կուլտուրա, հաջողությամբ աճում է բացառիկ անբարենպաստ պայմաններում: Պիստակենու երաշտադիմացկունությունը բացատրվում է նրանով, որ արմատները շատ խորն են թափանցում հողի մեջ, իսկ տերևները նվազագույն չափով են գոլորշիացնում խոնավությունը: Պիստակենին նաև շատ ցրտադիմացկուն է:

Այդ ծառատեսակը համեմատաբար դանդաղ է աճում, բայց չափազանց երկարակյաց է. ապրում է մի քանի դար, երբեմն էլ մինչև հազար տարի: Կան իգական և արական պիստակենիներ: Արական ծառերը պտուղ չեն տալիս:

Պիստակենու տնկիները տեղափոխելուց հետո կամ չորանում են, կամ շատ թույլ են աճում: Ուստի, բազմացումը պետք է կատարել միայն սերմերի միջոցով: Պիստակենին հնարավոր է աճեցնել Շամշադինի, Իջևանի, Նոյեմբերյանի, Ալավերդու, Մեղրու, Ղափանի, Գորիսի, Եղեգնաձորի շրջանների առավել տաք ու ցածրադիր վայրերում: Պիոներ-դպրոցականները օգոստոս ամսին կարող են պատվաստել և դրանով իսկ ազնվացնել Հայաստանի տարբեր տեղերում, հատկապես Ալավերդու, Նոյեմբերյանի շրջաններում և Դեբեդ գետի կիրճում աճող պիստակենու վայրի ծառերը:

Պիստակենու կտրոններ ու սերմեր կարելի է ձեռք բերել Հոկտեմբերյանի շրջանի Ժդանովի անվան կամ Նոյեմբերյանի շրջանի Այրումի սովխոզներից:

Թղթե բաժակներում աճեցված պիստակենու բույսերը կարելի է տեղափոխել և տնկել հիմնական տեղում, ինչպես գարնան, այնպես էլ ամռան ու աշնան ամիսներին:

Լ. ԷՆՖԻԱՋՅԱՆ

# ԲԱԶՄԱՑՆԵՆՔ ՋՐԱՅԻՆ ԹՌՉՈՒՆՆԵՐ

Թռչնաբուծությունը գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերից է: Նա տալիս է համեղ սննդամթերք, թանկարժեք փետուր և աղվամազ: Իսկ ջրային թռչունները վաղահասությամբ առաջին տեղն են բռնում և շատ քիչ ծախս են պահանջում: Օրինակ՝ պեկինյան ցեղի բադի օրական աճը կազմում է 50—60 գրամ: Բադը մեկ տարում տալիս է 180—200 ձու, որի ընդհանուր քաշը 4—6 անգամ գերազանցում է իր իսկ բադի կենդանի քաշին:

Հայաստանի լեռնաշխարհը հարուստ է գետերով, առվակներով, լճակներով և ջրավազաններով, որոնցից շատերը ծածկված են ջրային հյութալի բույսերով: Այդ վայրերում հնարավոր է քիչ կերով շատ թռչուն աճեցնել և մեծ արդյունքի հասնել:

Հաշված է, որ մեր Միության ծանծաղուտ ջրավազաններում

կարելի է տարեկան աճեցնել 250—300 միլիոն բադ և ստանալ 400 հազար տոնն միս։

Հայաստանի դպրոցականները մեծ հնարավորություն ունեն զբաղվելու ջրային թռչունների բուծմամբ։

Ձեռնտու է բադերը պահել 70 օրից ոչ ավելի, քանի որ դրանից հետո փետրաթափ լինելու պատճառով մաշվում են։ Ձու ստանալու նպատակով բուծելիս կարելի է դրանց պահել երեք և ավելի տարիներ։

Բադերին կարելի է կերակրել ջարդած եգիպտացորենով, ցորենի, գարու հատիկներով ու թեփով, կաթնամթերքների թափուկներով, մածնով, քուսպով, խոտի ալյուրով և այլն։ Բադերին պետք է կերակրել վիտամինային կանաչ կերով (առվույտ, եղինջ, կաղամբ, գազար, ճակնդեղ, սիլոս)։ Պետք է տալ նաև՝ շատ քիչ քանակով կավիճ, մանրացրած խխունջ, հանգած կիր, ձվի կճեպ, կերակրի աղ։

Բադերին մինչև տասնօրյա հասակը պետք է կերակրել երկու ժամը մեկ անգամ, այնուհետև՝ վեց անգամ։ Մինչև քսանօրյա հասակը կերը պետք է տալ փխրուն վիճակում, քանի որ կպչուն կեր ուտելիս նրանց կտուցները կարող են իրար կպած մնալ ու չբացվել։ Դրանից թռչունները սատկում են։

Ցանկալի է բադերը պահել ավազոտ վայրերում, բնակավայրերից հեռու և ջրավազանին մոտ տեղերում։

Ա. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ
(Ագրոնոմ, վաստակավոր ուսուցիչ)




ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Նկ. ՄԻՀՐԱՆ ՍՈՒՈՅԱՆԻ

Ծույլ տղան, անկողնում պառկած, խռմփացնում է։ Լսվում է աքլորի կանչը, հնչում են պատի ժամացույցի զանգի ղողանջները։ Բայց տղան քնած է և չի լսում։ Երկրորդ անգամ լսվում է աքլորի կանչը։ Նորից հնչում են ժամացույցի զանգի ղողանջները։ Արդեն ժամը տասն է։ Տղան արթնանում է, նստում, աչքերը տրորում, հորանջում։ Լսվում է աքլորի բարձր կանչը։ Ծույլ տղան զայրացած նայում է բաց պատուհանի կողմը և փնթփնթում։

ԾՈՒՅԼ ՏՂԱ — Օ՜ֆ, աքլորները գլուխս տարան.
Ինչու՞ չեն նրանց կանչում դատարան.
Ինչու՞ չեն դատում,
Կարգին խրատում,
Որ իրենց ձայնից իրենք ամաչեն
Ու լուսաբացին բարձր չկանչեն.
Թե չէ ի՞նչ է սա,
Չեն թողնում, որ մարդ մի քիչ աչք փակի։
Բոլորի համար ցավ է ուղղակի։
(Հարված նայում է պատի ժամացույցին)։
Ի՞նչ եմ տեսնում —
Ժամի տա՞սը։
Նոր վերջացավ
Երկրորդ դասը։
Լավ քնեցի
Եվ ուշացա։
Բայց արի տես՝
Չկշտացա (Նորից հորանջում է)։

ՀԱՂՈՐԴԱՎԱՐ — (Բեմ մտնելով՝ հեգնաբար նայում է ծույլ տղայի կողմը)։

*Այս պարկում, անբան տղան*
*Արթնանում է ժամը տասին...*

**ԾՈՒՅԼ ՏՂԱ** — (Ծուլորեն կանչում է):
*Հե՜յ, անեցիք,*
*Մոռացե՞լ եք դուք իմ մասին։*
*Ո՞ւր եք կորել։ Սոված մեռա։*
*Ուտելու բան բերեք շնորհ արեք:*
(Ծույլ տղայի տատը, մայրը և քույրը ուտելիքներ են բերում։ Նա ախորժակով ուտում է և ձեռքով նշան անում, որ էլի՛ բերեն)։

**ՏԱՏ** — *Բերեմ, բերեմ, այ իմ ճգնած։*
*Կաթ ու մածուն, բաղա՛րջ, բլի՛թ...*

**ՀԱՂՈՐԴԱՎԱՐ** — *Ահա, այսպես նա նստում է*
*Եվ անկողնում նախաճաշում։*
*Կուշտ ուտում է*
*Ու վերմակը գլխին՛ քաշում։*
(Ծույլ տղան պառկում է և վերմակը քաշում գլխին)։
*Խոր քնում է նա մինչև ճաշ։*
*Ճաշին ելնում, ուտում լավաշ,*
*Տապակած հավ,*
*Զամչով փլավ,*
*Թթու, կծու,*
*Պանիր ու ձու։*
*Բլիթ, բաղարջ,*
*Ելակ, հաղարջ...*
(Ծույլ տղան արթնանում է, նայում շուրջը։ Տատը մատուցարանի վրա բերում է ուտելիք։ Թոռը ագահաբար ուտում է ու նորից քնում)։

**ՏԱՏ** — (Վախվխելով)։
*Ջարդ տանեմ, բա դպրո՞ցը։*

**ԾՈՒՅԼ ՏՂԱ** — *Թո՛ղ խրատը, հարցուփորձը։*

**ՀԱՂՈՐԴԱՎԱՐ** — *Նա մտնում է տաք անկողին,*
*Մինչ իրիկուն պառկում կողին։*
*Իրիկունը արթնանում է,*
*Հազար ու մի բան պահանջում։*

**ԾՈՒՅԼ ՏՂԱ** — (Վերմակը մի կողմ նետելով)։
*Հե՜յ, անեցի՛ք, սովից մեռա։*
*Ո՞ւր եք տանջում։*
*Քանի ժամ է՝ բան չկերա...*
(Տատը ուտելիք է բերում)։

**ՏԱՏ** — *Անուշ արա,*
*Ասլան բալա,*
*Թող երեսիդ*
*Գույնը շողա։*
*Այ քեզ իշխան,*
*Այ քեզ կողակ։*
*Համի տոտիկ,*
*Համեղ խորտիկ։*

**ԾՈՒՅԼ ՏՂԱ** — (Ջուկը տալով տատին)։
*Նանի, նանի,*



*Փուշը հանի։*
(Ուտելուց հետո հագնվում է, մոտենում պատուհանին, նայում բակի կողմը)։
*Ո՞ւր եմ ցցվել։*
*Ես հո կաղ չե՞մ։*
*Գնամ բակը,*
*Մի քիչ շրջեմ։* (Դանդաղաքայլ դուրս է գալիս)։

**ՏԱՏ** — (Նրա հետևից գնալով)։
*Մատաղ եմ քեզ,*
*Տես՝ չմրսես,*
*Շատ չմնաս։*
*Շուտ տուն կգաս...*

**ՀԱՂՈՐԴԱՎԱՐ** — *Գնում է բակ,*
*Մի քիչ շրջում*
*Ու տուն գալիս,*
*Խուլ քրթմնջում։*
(Ծույլ տղան վերադառնում է բակից, ծուլորեն նստում, մեկ շփում ծնկները, մեկ՝ ճակատը, տնքտնքում է, գլուխը թափահարում)։

**ԾՈՒՅԼ ՏՂԱ** — *Օ՜ֆ, հոգնեցի,*
*Քարից հո չե՞մ,*
*Քիչ է մնում*
*Շունչս փչեմ։*
(Տատը ներս է մտնում և վախեցած նայում նրան)։
*Վա՜յ, ցավում են ոտ ու ձեռս...*

**ՏԱՏ** — *Ինչ փորձանք էր՝ եկավ գլխուս։*
*Մեջքը մաժեք,*
*Շփեք թաթը։*
*Ջարդ տանի*
*Քո մեծ տատը։*

(Կանչում է):
Եկե՛ք, հասե՛ք:
Բարդուղ, Բարսեղ...
Պենիցիլի՜ն,
Բժի՛շկ, ասե՛ղ...
(Տագնապահար ներս են մտնում Բարդուղը և Բարսեղը):
Ձեռից գնաց մինուճարս...
Տատը տանի ցավ ու չարը...
Բարդուղ, Բարսեղ,
Բժի՛շկ, ասե՛ղ...
(Բարդուղը և Բարսեղը վազելով գնում են: Տատը քնքշանքով փաղաքշում է թոռանը):
Իմ ծաղկած ծառ,
Իմ անմեղ գառ,
Մեր օջախի անմար կրակ,
Մեր աչքի լույս, մեր տան ճրագ:
Բարդուղ, Բարսեղ,
ժիշկ, ասեղ...
Ու՞ր մնացին:
Վո՜ւյ, ուշացան...

ԾՈՒՅԼ ՏՂԱ — (Անփութորեն):
Դե լա՛վ, դե լա՛վ.
Ցավս անցավ:
Տատի, տատի,
Հերիք է լաս:
Սովից մեռա,
Սեղանը բաց:
(Տատը համբուրում է նրան և սեղան բացում):

ՏԱՏ — Ուրիշ ի՞նչ տամ
Ասլան բալիս:

ԾՈՒՅԼ ՏՂԱ — Շատ եմ սիրում
Անուշ նանիս:
(Շնչակտուր ներս են մտնում Բարդու-Բարսեղը, բժիշկը և բուժքույրը):

ՏԱՏ — (Ուրախ):
Մինուճարս լավ լավացավ:
Մինչև եկաք՝ ցավը անցավ:
Բարդու՛ղ, Բարսե՛ղ,
Ո՛չ մի ասեղ:
(Բժիշկը և բուժքույրը զայրացած հեռանում են: Բարդուղը և Բարսեղը կշտամբանքով նայում են՝ մեկ տատին, մեկ՝ ծույլ տղային):

ԲԱՐԴՈՒՂ — Ծաղրո՞ւմ եք մեզ:

ԲԱՐՍԵՂ — Այ քեզ կրկե՜ս:

ԲԱՐԴՈՒՂ — Բա սա բա՞ն է,
Ձե՞ք ամաչում:

ԲԱՐՍԵՂ — Էլ ու՞ր էիք
Բժիշկ կանչում:

ԲԱՐԴՈՒՂ — Այ քեզ հիվանդ,
Սուտիկ-մուտիկ...

ՏԱՏ — Թողեք թոռս
Մի բան ուտի:

ԾՈՒՅԼ ՏՂԱ — (Կուշտ ուտելուց հետո):
Էլ չեմ ուզում
Քիշմիշ, կաղին:
Լավ կշտացա:
Վերջ իմ խաղին:
Հիմա մտնեմ
Տաք անկողին:
(Կոշիկները հանում է և շորերով մտնում անկողին):

ՏԱՏ — (Աղերսաբար):
Շորերդ հանիր, ասլան բալա...

ԾՈՒՅԼ ՏՂԱ — (Դժգոհ): Այս տեսակ էլ խաթաբալա...
Օ՜ֆ, ձեր ձեռքին կրակն ընկա:
Դե լավ, տատի, քիչ տնքտնքա:
Արդեն ուշ է,
Լույսը մարի:
Ես քնեցի:
Գիշեր բարի: (Վերմակը քաշում է գլխին ու քնում):

ՀԱՂՈՐԴԱՎԱՐ — (Ակնարկելով ծույլ տղային):
Ընկերները այս անբանին
Բաց Նազարի թոռն են կոչում:
Տանը, դրսում, թե դպրոցում
Նա մնում է միշտ էլ պոչում:
Լավ է ասված՝
Փայտը ծուռ է՝ ռանդով տաշիր,
Մարդը ծույլ է՝
Ականջները ամուր քաշիր:





# ՆԱ ԳԱՌՆԵՐԸ ԵՐԿՆՔՈՒՄ ԷՐ ԱՐԱԾԵՑՆՈՒՄ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Մտացածի՞ն է թվում այս վերնագիրը, անիրակա՞ն, շինծու՞։ Ո՛չ, սիրելի երեխաներ, ես պետք է ձեզ ուղղակի ասեմ. այո՛, նա, իմ այս պատմվածքի հերոսը, իրոք, գառները երկնքում էր արածեցնում, կապու՛յտ-կապու՛յտ երկնքում։

Ձեր համբերությունը չչահագործեմ, պատմեմ։

Քաջարանի Հանքավան կոչվող թաղի պիոներները հրավիրել էին նշանավոր հանքափոր, խոր փորման հաստոցի ղեկավար Էդվարդ Համբարձումյանին, որը հենց սկզբից անակնկալի բերեց երեխաներին՝ իր զրույցն սկսելով այսպես.

— Տասնհինգ տարի առաջ ես գառներ էի արածեցնում ա՛յ այնտեղ,— և նա բաց պատուհանից ցույց տվեց կապու՜յտ-կապու՜յտ երկինքը։

Երեխաները, որոնցից ոչ մեկն էլ այդ ժամանակ ծնված չի եղել, բնականաբար զարմացան ու միաժամանակ գոչեցին.

— Ինչպե՞ս...

Եվ Էդվարդը պատմում էր իր կյանքից դրվագներ։ Եվ նա այնպես անպաճույճ, այնպես մատչելի էր պատմում, որ երեխաներին թվում էր, թե կինոնկար է ցուցադրում, մի փոքրիկ հաճելի կինոնկար, որի հերոսը էկրանից իջել ու զրուցում է իրենց հետ։

...1947 թվականի գարունն էր, չքնաղ մայիսը։ Գանձասարի խոտավետ լանջին արածում էր Կաթնառատ գյուղի կոլտնտեսության գառների հոտը, որի հովիվը տասնվեցամյա Էդվարդն էր։ Հանկարծ մի ուժգին պայթյուն լսվեց լեռան ստորոտից։ Գառները խրտնեցին, այս ու այն կողմ փախան։ Փոքրիկ հովիվը թողեց ալպիական մանուշակներով հիանալը ու ձեռքը ճակատին դրեց։ Գանձասարի գագաթից վար նայեց։ Փոշու մի հավաք ամպ ուղտի պես դանդաղ վեր էր բարձրանում, հետզհետե ծավալվում ձորում։ Փախչում էին գառները հարևան լեռն ի վեր, փոքրիկ հովիվը չէր կարողանում նրանց պահել, իսկ ձորում որոտները շարունակվում էին։ Հայրը՝ ավագ հովիվ Բաշխին հեռվում կանգնած, ծիծաղում էր, տեսնելով, թե որդին որքա՛ն է անհանգստացել։

— Քար են պայթեցնում ձորում, հայրիկ.— ասաց Էդվարդը։

— Ի՜նչ քար, որդի ջան, հանք են փորում, ասում են՝ էս ամբողջ սարը գանձ է, պետք է քանդեն, հալեն, պղինձ ու մոլիբդեն ստանան։

Որդին հոտը թողեց հորը, նորից Գանձասարի գագաթը վազեց, այնտեղից վար նայեց։ Գորշ ու կապույտ մշուշները միախառնվել էին։ Դժվար էր հստակ որոշել, թե այնտեղ ինչ էր տեղի ունեցել։ Ու ալվան ծաղիկների միջով սուրալով, բուրավետ մասրենիների վրայով թռչկոտելով՝ իջավ ձորը։

Մի վիթխարի վերք էր ասես բացված Գանձասարի ուղիղ կրծքին... Այնտեղ այնքա՛ն մարդիկ կային. մեկը փորվածքն էր չափում, մյուսը դիտում էր ապառները, զննում մանրադիտակով, երրորդը ապառներից նմուշներ էր առնում, դասավորում արկղի մեջ։ Փոքրիկ հովիվն այնտեղ, այդ մարդկանցից էլ լսեց.

—Վերջապես ապացուցվեց. ամբողջ լեռը գանձ է, սկսում ենք կոմբինատի շինարարությունը։

Գա՜նձ, Գանձասա՜ր, կոմբինատի շինարարություն...

Բարձրացավ Էդվարդը հոր մոտ ու հաղորդեց նրան, թե ինչ լսեց, ապա ավելացրեց.

— Հայրի՛կ, ես էլ կուզեի այնտեղ աշխատել...

* * *

Գյուղից եկած, հովվական ցուպը նոր գցած, կարմրերես բանվոր տղային ընդունեցին աշխատանքի։ Տասից-երեսուն մետր խորությամբ հողն ու քարը պետք է վերցնեին, մի կողմ շուռ տային, տակից հանեին օգտակար հանածոն։ Ամբողջ երեք տարի տասնյակ էքսկավատորներ, հարյուրավոր ավտոմեքենաներ, փորող հաստոցներ դրանով էին զբաղված. լեռը, այսպես ասած, մաշ-

կում էին, տկլորացնում, բացում նրա տակ թաքնված գանձը։ Ինքը, էդվարդը փորում էր լեռան այն կտուրը, որտեղ մի ժամանակ գառներ էր արածեցնում, պոկոտում էր օշոշ ծաղիկներն ու կարմրաթերթ վայրի վարդերը, որոնց բույրով շատ անգամ էր հմայվել։ Փորում էր ու հիշում, թե ինչպես մայում էին գառները, երբ մոտենում էր ոչխար կթելու պահը։

Տարիներ հետո, երբ հաստոցավարների բրիգադավարին հանգստի էին ուղարկում, հրաժեշտի փոքրիկ հավաքույթ տեղի ունեցավ Գանձասարի մի զառիթափի վրա։

— Իսկ ո՞վ կփոխարինի մեր փորձված բրիգադավարին, — հարցրեց հանքի պետը։

— Էդվա՜րդը, էդվա՜րդը, — գոչեցին բոլորը միաբերան։



Երիտասարդ հաստոցավարն իր ուսերին մի ծանր բեռ զգաց այդ պահից ի վեր և մեծ պատասխանատվությամբ հանձն առավ ոչ միայն իր հասակակից, իրենից կրտսեր հաստոցավարների գործունեու-

ԳԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

## ԱՄԱՌ

Կախա՞րդ ես դու, ասա, ամա՛ռ.
Կարծես վրձնով անտես
Դարձրել ես դու մեր հողը մայր
Հրաշք ցուցահանդես։

Հա՞նք կա հողում բույրի, գույնի,
Արև՞ն է տալիս քեզ...
Ծիածանը յոթ գույն ունի,
Դու հազար յոթն ունես։

Ի՞նչ թելից ես թերթեր հյուսում,
Թիթեռնիկի թևեր...
Ո՛չ գրքում կա, ո՛չ երազում
Այսքան գույներ, ձևեր։

Ամա՛ռ, ոսկի ձեռքեր ունես
Ամա՛ռ, կախարդ ջուլհակ,
Հիացմունքից ուզում եմ
Կանգնել պատվո պահակ

## ԱՐՇԱԼՈՒՅՍԸ

Ժայռը կղզում Սևանա
Մամռոտ հոնքերն է կիտում,
Արևելքն է լուռ դիտում.
Արշալույսը շուշանա՞։

Ահա բացվեց շողշողուն
Երկինքն, ինչպես մանուշակ։
Որպես ճերմակ դրոշակ,
Մի ամպիկ է փողփողում։

## ՍԵՎԱՆՈՒՄ

Լեռնապարը վիթխարի
Լճի շուրջը բոլորված՝
Էլ չի նայում մոլորված.
Լու՜յս է իջնում աշխարհին։



թյունը ղեկավարել, այլև՝ իր կրկնակի տարիքն ունեցողների: Ղեկավարեց այնպես, որ օրական տասը գծային մետր փորող հաստոցների արտադրողականությունը ընդամենը չորս տարում մինչև քսանհինգ գծամետրի հասավ: Իսկ երբ կոմունիստական աշխատանքի շարժումն սկսվեց և Քաջարանում հարց եղավ, թե ո՞ր բրիգադն է կոմունիստականի արժանի, կոմբինատի ղեկավարները և լեռնագործների ողջ կոլեկտիվը միաբերան գոչեցին.

— Էդվարդ Համբարձումյանի՜:

Ահա ավելի քան երկու տարի է, ինչ կաթնառատցի հովիվ Բախշիի երբեմնի հովիվ որդին տասնհինգ հաստոցի գործունեություն է ղեկավարում և տասնհինգ հաստոցավարներն էլ կոմունիստաբար են աշխատում՝ շարունակ գերակատարելով առաջադրանքները: Իսկ ձմռան օրերին, երբ բուքն է նեղում, վթարի հետևանքով եթե որևէ հաստոց է դուրս գալիս շարքից, անմիջապես «հարձակվում» են, կանխում վթարը, գործի գցում հաստոցը, հաստոցավարի բամբակե բանկոնակին թփթփացնում, որ նշանակում է՝ «թիկունքիդ կանգնած ենք, աշխատիր, համարձակությամբ ճեղքիր լեռան կուրծքը»:

Գանձասար... Մի ժամանակ այս սարի գագաթը 2300 մետրի վրա էր, այժմ՝ 2150-ի: Ամբողջ հարյուր հիսուն մետր պոկել են լեռից, շուռ տվել և հիմա էլ մնացած մասն են շուռ տալիս Էդվարդն ու նրա ընկերները:

Հավաքույթն ավարտվեց. պիոներները ցրվեցին: Մինչև իրենց տները հասնելը նրանք կրկին ու կրկին ետ էին դառնում ու նայում Գանձասարին, որը կեսից վերև կտրած-վերցված է: Ու հիշում էին հանքափորի խոսքերը.

— Հի՛ն, երկնքում, սարի նախկին գագաթին էի արածեցնում գառները...

Երեխաները նայում էին երկնքին, աշխատում պատկերել Գանձասարի նախկին գագաթը, ուր գառներ էր արածեցնում պատանի Էդվարդը...

Արևն ելա՜վ բարձունքից...
Ցնծում են ժայռ ու կածան,
Ցողն է վառում ծիածան,
Ձայն է ճչում հուզմունքից:

Բոցկլտում է, հուրհուրում
Մեր դեմ լիճը Գեղամա:
Խոնարհվում ենք ակամա,
Մաքուր ջուրն ենք համբուրում:

# ՍԵՎԱՆԻ ՃԱՄՓԱՆ

Կարծես ճամփան
Հսկայական
Օձ է կեռ,
Ոլորվում է,
Գալարվում է
Լեռն ի վեր:

Կախված խոժոռ՝
Քանի՜ խոշոր
Քարաժայռ
Նայում են մեզ,
Հիմա կարծես
Կընկնեն վար:

Ելանք սարը,
Փարվեց սառը
Քամին մեզ,
Ահա ծփաց
Սևանը բա՜ց
Սրտի պես:

Հասանք: Փռվեց,
Շողաց, վառվեց
Ափն ի վեր
Կապո՜ւյտ, մաքո՜ւր,
Երկնքի քույր
Լիճը մեր:



# Ժամանց



## ՓՈՐՁԻՐ ՀԱՇՎԵԼ

Այստեղ քանի՞ մուկ, քանի՞ ձուկ և քանի՞ կատու կա: Պետք է հաշվել հետևյալ կերպ. մեկ կատու, մեկ մուկ, մեկ ձուկ: Երկու կատու, երկու ձուկ, երկու մուկ: Երեք ձուկ, երեք մուկ և այլն:

Առաջարկ՝
Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ





## ԽԱՉԲԱՌ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱ»

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ—1. Սովետական ականավոր գիտնական-քիմիկոս: 2. Առաջին տիեզերագնացը: 3. «Ռուսական ավիացիայի հայրը»: 6. Ականավոր գիտնական, գյուտարար և ինժեներ, որը առաջինն է հետազոտել ռեակտիվ շարժման օրենքը: 7. Ռուս մեծ գիտնական-ֆիզիոլոգ: 8. Ժամանակակից աշխարհահռչակ աստրոֆիզիկոս: 11. Մոլորակ: 13. Սովետական Միության խոշոր աստղադիտարաններից մեկը: 14. Երկարության միավոր: 16. Բնության մեջ գտնվող մարմինների մանրագույն մասնիկը: 19. Վենետիկցի միջնադարյան անվանի ճանապարհորդ, որն առաջինը տեսավ Չինաստանը:



ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ—4. Պորտուգալիացի հայտնի ծովագնաց, որը մոտ 400 տարի սրանից առաջ կատարեց առաջին շուրջերկրյա ճանապարհորդությունը: 5. 7-րդ դարի խոշորագույն հայ մաթեմատիկոս-տիեզերագետ, որը գիտական երևակայությամբ հաշվել է Լուսնի փուլերի փոփոխության ատիճանները: 8. 12-րդ դարի հայ բժիշկ: 9. Մոլորակ: 10. Ռուս հանճարեղ գիտնական, Պուշկինի խոսքերով ասած՝ «Ռուսական առաջին համալսարանը»: 12. Քիմիական նյութ: 15. Անգլիացի աստղագետ, որը հայտնագործեց Ուրան մոլորակը: 17. Նյութի վիճակ: 18. Գիտնական, որի պատրաստած ինքնաթիռով մարդը առաջին անգամ օդ բարձրացավ: 20. Ռուս մեծ գիտնական, ռադիոյի գյուտարարը: 21. Հայ տաղանդավոր գիտնական, որ 1957 թ. աշխարհում առաջին անգամ քարից թել ստացավ:

Կազմեց՝ Շ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

## ՃԱՆԱՉԻՐ ՏԻԵԶԵՐՔԸ

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ—1. Մոլորակ, որը 17 տարին մեկ անգամ մոտենում է Երկրին: 2. Երկրի արբանյակը, որի վրա 1959 թ. ընկավ սովետական վիմպելը: 3. Մոլորակ, որն ունի գեղեցիկ օղակ: 4. Սեփական լույս և ջերմություն ունեցող տիեզերական մարմին: 5. Ամիս, որի ընթացքում հավասարվում են գիշերը և ցերեկը: 6. Խոշոր քաղաք, որի մոտ գտնվող խոշոր աստղադիտարանի վրայով անցնում է Երկրի սկզբնական միջօրեականը: 7. Քաղաք ՍՍՌՄ-ում, որը գտնվում է 9-րդ ժամային գոտում, 43—06 լայնության վրա: 8. Անգլիացի խոշոր գիտնական, տիեզերական ձգողականության օրենքի հայտնագործողը: 9. Սովետական գիտնականների կողմից տիեզերք նետված մարմին: 10. Խոշոր աստղադիտարան Արագածի լանջին: 11. Աշխարհահռչակ աստղաբաշխ: 12. Հորիզոնը դիտողի գլխավերևի ամենաբարձր կետը:

Ճիշտ լրացնելուց հետո կենտրոնական ուղղահայացում կստացվի գիտական հիմնարկության անվանում:

Առաջարկ՝ Վ. ԽԱՐԱՋՅԱՆԻ



## ԽԵԼԱՄԻՏ ՏՂԱՆ

Երեք եղբայրներ ստացան 24 խնձոր, ըստ որում ամեն մեկին հասավ այնքան խնձոր, որքան նրա տարիքն էր երեք տարի առաջ: Ամենից կրտսերը, որ շատ խելամիտ տղա էր, եղբայրներին առաջարկեց խնձորների այսպիսի փոխանակություն.

— Ես,—ասաց նա,—ինձ համար կպահեմ մոտս եղած խնձորների միայն կեսը, իսկ մնացածը հավասար կբաժանեմ ձեզ: Դրանից հետո թող մեր միջնակ եղբայրը նույնպես իր մոտ պահի կեսը, իսկ մնացած խնձորները հավասար բաժանի ինձ և մեր ավագ եղբորը: Հետո ավագ եղբայրը թող վերցնի իր խնձորների կեսը և մնացածը հավասար բաժանի իմ և միջնակ եղբոր միջև:

Եղբայրները համաձայնեցին: Արդյունքը եղավ այն, որ բոլորը հավասար քանակությամբ խնձոր ունեցան:

Քանի՞ տարեկան էր տղան և նրա եղբայրներից յուրաքանչյուրը:



## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 6

ԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ — Նամուս: Օրբելի: Փոստալ: Սարոյան: Գյոթե: Սամվել: Անանյան: Պուշկին: Սուտասանը: Աբովյան: Հացավան: Կենտրոնական ուղղահայացում՝ Մեսրոպ Մաշտոց:

«ՊԻՈՆԵՐ» № 7

ԳԱՂՏՆԱԳԻՐ «ՍՊՈՐՏ» — 1. Օպերա: 2. Զարյան: 3. Լիոն: 4. Լենին: 5. Սախալին: 6 Լատիշ: 7. Կովկաս: 8. Վարագ: 9. Սպի: 10. Ն:

Ուղղահայաց սյունյակներում՝ Լատինինա: Ազարյան: Վլասով: Պրեսս: Շախլին: Օզոլինա: Կրեպկինա:

ՔՈ ԿԱՐԴԱՑԱԾ ԳՐՔԵՐԻՑ — Տորք Անգեղ: Պավլիկ Մորոզով: Քաջ Նազար: Վիտյա Մալեև: Գիքոր: Անգետիկ: Անահիտ:




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

# ՏԱՎՐՈՍԻ ԱՐԾԻՎՆԵՐԸ

Կիլիկիա...

Այսպես է կոչվել Միջերկրական ծովի ափին ընկած այն երկիրը, ուր հայեր են ապրել հազարամյակներ ի վեր: Մեր թվականության 9-րդ դարում այստեղ արդեն կային հայկական մի քանի իշխանություններ, իսկ հետագայում ստեղծվեց նաև առանձին թագավորություն։

Երկյուղ կրելով Կիլիկիայի հայկական պետության հզորացումից, եգիպտական զորքերը շարունակ ներխուժում էին հայկական գյուղերն ու քաղաքները և սկսում ավերը, թալանն ու սպանությունները: Ի վերջո, 1375 թվականին նրանց հաջողվեց կործանել երեք հարյուր տարվա պատմություն ունեցող հայկական պետությունը։ Եգիպտական հրոսակներին միացան քրդական ցեղերն ու թուրքերը։ Կիլիկիայի հայերին սպառնում էր ֆիզիկական բնաջնջման վտանգը։ Նրանք ստիպված եղան թողնել իրենց բնակավայրերը և ապաստան գտնել Տավրոսի անմատչելի լեռներում ու կիրճերում։ Պիրիդ լեռան ստորոտում գտնըվող բարձրավանդակի վրա կար մի գյուղ, որ կոչվում էր Ուլնիա։ Թուրքական յաթաղանից փրկվելու համար այստեղ են գաղթում մեծ թվով հայեր։ Շուտով Ուլնիան դառնում է խոշոր քաղաք՝ շրջապատված բազմաթիվ գյուղերով ու բերդատներով։ Բայց այն այլևս Ուլնիա չէր կոչվում. թուրքերը փոխել էին անունը և դրել Զեյթուն: Կամաց-կամաց մոռացվեց իսկական անունը և ամբողջ աշխարհում հռչակվեց որպես Զեյթուն։

Իսկ ինչո՞վ է նշանավոր Զեյթունը: Ամենից առաջ աշխատասեր, քաջ և անձնուրաց մարդկանցով: Օսմանյան կառավարությունն ու ավարառու ցեղերը քանի-քանի անգամ են հարձակվել Զեյթունի վրա, որ վերացնեն հայերի անկախ համայնքը։ Թուրքական զորքերը մինչև 9 ամիս պաշարման մեջ են պահել քաղաքը, որ սովի սպառնալիքով ծնկի բերեն հայ լեռնականներին: Սակայն Տավրոսի արծիվները սնվել են հատապտուղներով ու արմտիքներով և քաջաբար դիմադրել թշնամուն։

Երկար նախապատրաստությունից հետո թուրքական կառավարությունը 1862 թվականին վճռեց վերջնականապես լուծել


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ.* (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 02224, Պատվեր 1035 Տպաքանակ՝ 8000։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 1/VIII 1962 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

Գինը 20 կ.

Զեյթունի հարցը և բնաջնջել ամբողջ գավառը։ Հունիս ամսին թուրքական հորդաները փակեցին Զեյթունի բոլոր ճանապարհները ու լեռնային անցուղիները և ներխուժեցին գյուղերը։ Բնակչությունը կատաղի դիմադրեց, մինչև Զեյթունից օգնության հասան զինված ջոկատները և թուրք բաշիբոզուկներին դուրս շպրտեցին գավառի սահմաններից։ Թշնամին ավելի գազազեց և հուլիսի վերջերին ահռելի զորքով արշավեց Զեյթունի վրա։ Ամբողջ գավառում կար 30 հազար հայ, այդ թվում նաև երեխաներ, ծերունիներ, կանայք։ Բայց Ազիզ փաշան նրանց դեմ հանեց 40 հազարանոց զորք։ Գյուղերը թեև դիմադրում էին, սակայն չկարողացան արգելել թշնամու գերազանց ուժերի առաջխաղացումը։ Թուրքերը ավերեցին ու հրդեհեցին հայ գյուղերը, հափշտակեցին ունեցվածքը, սրի քաշեցին ծերունիներին, կանանց ու երեխաներին։

Այսպես, մահ ու ավերածություն տարածելով, Ազիզ փաշան օգոստոսի սկզբներին հասավ Զեյթուն ու պաշարեց քաղաքը։ Դրությունը կործանարար էր, բայց չհուսահատվեցին ազատասեր ու քաջասիրտ լեռնցիները։ Բացի երեխաներից, զինվեցին բոլորը. 15—60 տարեկան թե՛ տղամարդիկ և թե՛ կանայք։ Նրանց միացան նաև գյուղերի փրկված բնակիչները։ Զեյթունցիների կռվող ուժը հասավ 7 հազարի։ 7 հազարը 40 հազարի դեմ... Եվ ի՞նչ, այս անգամ էլ թուրքերը չկարողացան ընկճել զեյթունցիներին։ Օգոստոսի 14-ին թուրքական բանակն անցավ ընդհանուր հարձակման, բայց ամենուրեք դարան մտած հայ զորաջոկատները հանկարծակի ու սրընթաց գրոհներով մեծ ջարդ տվեցին թշնամուն և ամսի 17-ին դուրս շպրտեցին իրենց հողից։

Թուրքական կառավարությունը երբեք այդպիսի մեծ զորքով չէր հարձակվել Զեյթունի վրա և երբեք էլ այդպիսի խայտառակ պարտություն չէր կրել. կորցրել էր մոտ 12 հազար մարդ, երկու թնդանոթ, մեծ քանակությամբ զենք ու զինամթերք, զինվորական դրոշակներ, անասուններ, սայլեր և այլն։

1862 թվականի հերոսական պաշտպանությունը պատմության մեջ իր նմանը չունի և եզակի երևույթ է։ Զեյթունցիները փառավոր էջեր գրելով ազգային-ազատագրական պայքարի պատմության մեջ, երկար տարիներ ոգեշնչել և պայքարի են հանել հայ ժողովրդին՝ ցույց տալով քաջության, ազատասիրության ու հայրենասիրության օրինակ։

1895—96 թվականներին, երբ թուրքական կառավարությունը կազմակերպեց անզեն ու անօգնական հայ ժողովրդի ջարդը (սրի քաշելով ավելի քան 300 հազար հայ), նորից ոտքի կանգնեց արծվաբույն Զեյթունը։ 40 օր շարունակ զեյթունցիները հերոսական դիմադրություն ցույց տվին թուրքական 80 հազարանոց բանակին և մեծ կորստի մատնեցին։ 1919 թվականի վերջերին թուրքերը նորից արշավեցին Զեյթունի վրա և շրջապատման մեջ պահեցին 7 ամիս։ Այս անգամ արդեն թուրքերին հաջողվեց ծնկի բերել խիզախ զեյթունցիներին. նրանք գրավեցին բոլոր հայկական բնակավայրերը և մոխրակույտի վերածեցին։ Կոտորածներից փրկված փոքրաթիվ հայերը սփռվեցին աշխարհով մեկ, ապա կամաց-կամաց եկան ու հանգրվան գտան Սովետական Հայաստանում։

Լրացավ Զեյթունի մեծ հերոսամարտի՝ 1862 թվականի հերոսական պաշտպանության հարյուր տարին։



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

